# ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ

---

# DEUTSCH–ARMENISCHE

# SPRACHLEHRE

# DEUTSCH-ARMENISCHE

# SPRACHLEHRE

VON

ARTIN HINDOGLU





VENEDIG

IN DER ARMENISCHEN BUCHDRUCKEREY

1830



Hindoglu, Artin
Kerakanutiwn germanatsi

# ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ
## ԳԵՐՄԱՆԱՑԻ ԲԱՐԲԱՌՈՅ


ԵՐԿԱՍԻՐԵԱԼ
ՀԻՆՏՕՂԼՈՒ ՅԱՐՈՒԹԻՒՆ ԿՈՒՏԻՆԱՑԻ
ՎԱՐԺԱՊԵՏ ՏԱՃԿԱԿԱՆ ԼԵԶՈՒԻ
'Ի ՄԱՅՐԱՔԱՂԱՔՆ ԱՒՍՏՐԻՈՅ 'Ի ՎԻԵՆՆԱ



ՏՊԱԳՐԵԱՑ

ԱՐԴԵԱՄԲՔ ԵՒ ԾԱԽԻՒՔ
ՊԱՐՈՆ ՍՏԵՓԱՆԻ ԲՈՄՊԻԿԵԱՆ ՐՈՒՍՃՈՒԽԵՑՒՈՅ
ՎԱՃԱՌԱԿԱՆԻ
'Ի ՓՈՔՐԱՆ ՔԱՂԱՔ ՄՈԼՏԱՒԻՈՅ





'Ի ՎԵՆԵՏԻԿ
'Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1830

ԱՌ ՄԵԾԱՊԱՏԻՒ

ՊԱՐՈՆ

# ՍՏԵՓԱ՛Ն ՌՈՄՊԻԿԵԱ՛Ն

Զգերմանական բառբառոյ Քերականութիւն զառաջինն տալով 'ի լոյս 'ի Հայազգի բառբառ, դու ինձ ընդ առաջ լինիս, ո՛ ՔԱՋԱՏՈՀՄԻԿ ՊԱՐՈՆ, որ ազգասէր գեղեցիկ նախանձու 'ի զարգացումն և 'ի բարգաւաճանս համազգեացդ ճգնեալ հանապազ՝ 'ի նոյն և զայլս յորդորես ։ Որով և իմ խրախուսեալ նուիրեմ քեզ ահա զդուզնաքեայ զայս վաստակ ազգասէր փութոյ։ Եւ թէպէտ թերութիւն գործոյս ոչ ինչ արժանի քում մեծութեանդ, այլ քոյին նմանեաց է և

այս առաքինութիւն, ոչ 'ի նուէրն՝ այլ 'ի կամս և 'ի յօժարութիւն հայել նուիրողին: Ընկալ արդ անարգամեծար քոյին քաղցրութեամբդ զնուէրդ և է զայս վաստակ, ոչ իբրև 'ի յաւելուած ինչ քոց փառաց՝ այլ ինձ 'ի պատիւ, որ եմ միշտ

ԱՆԱՐԳԱՄԵԾԱՐ ՏԷՐՈՒԹԵԱՆԴ

Խոնարհ ծառայ

ՅԱՐՈՒԹԻՒՆ

ՀԻՆՏՕՂԼՈՒ ԿՈՒՏԻՆԱՑԻ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ընդ եւրոպական կարեւոր և բարգաւաճեալ լեզուս և գերմանականն համարի արդ յամենեցունց ։ Որ հանգոյն այլոցն՝ խժալուր և անկերպարան գոլով 'ի սկզբանն, յերկար աշխատութք և բազում ջանիւք եհաս յայս կատարումն ։ Ազգք բնակեալք յեզերս Սեաւ ծովու և կասպիականին ծովին բարբառով վարէին. որք ապա ընդ ժամանակս ժամանակս յայլեայլ դէպս գաղթեալք 'ի Գերմանիա՝ ածին անդր ընդ իւրեանս զբնիկն բարբառ ։ Եւ վասն զի չև ևս հրահանգեալ էին, և յանլուելի պատերազմունս պատաղեալ, և խառնեալ ընդ օտարոտի ազգս՝ 'ի լեզուս նոցա խօսէին, բնիկն նոցա բարբառ անխնամ թողեալ էր ։ Իսկ 'ի յերրորդ դարու Գութք բնակեալք յեզր Սեաւ ծովու նեղեալ 'ի Հոնաց, դիմեալ եկին և նոքա յարևմուտս, և առ նմանութեան բարբառոյ իւրեանց ընդ գերմանականին՝ բնակեցին 'ի Գերմանիա ։ 'Ի սոցանէ Ուլփիլաս ոմն՝ ըստ քրիստոսական հաւատոցն գիտուն և աստուածապաշտ՝ թարգմանեաց զնոր կտակարանն 'ի գոթացի բարբառ, յերիւրեալ այբու-

բենս 'ի յունական և յիտալական տառիցն բաղադ-րութեամբ, որ և ցարդ կոչի գոթական դպրութիւն։

Յամին ութնհարիւրորդի վաթսներորդի ու-թերորդի, յաւուրս Կարոլոսի մեծի ինքնակալին սկիզբն եղև զարգանալոյ այսր բարբառոյ։ Զի նո-րա սահմանեալ կարգս հանճարեղս, և զերիցունս ոգէտս յորդորեալ յուսումնասիրութիւն, կառոյց վարժարանս, և վարժապետս հմուտս կացոյց 'ի նո-սա, և զմանկտին ձրի տայր մարզել՝ արքունի ռոճ-կաւ։ Նա և մատենադարանս կանգնեաց, և գրեաց գիրս ոտանաւորս 'ի հին լեզու լատին, և զվիպասա-նութիւնս դիւցազնականս նախնեացն գերմանացւոց ժողովեաց. և ընդ լատինական յօրջօրջանաց ամ-սոց՝ գերմանականս փոխանակեաց, և յեկեղեցիս 'ի բնիկ բարբառ քարոզել հրամայեաց. և քերակա-նութիւն իսկ զկանոնաց լեզուին բուռն եհար գրել։

Բայց մինչ չև տպագրութեան գիւտ լեալ էր, և աստուածաշունչ գիրք մինչ չև էին թարգմանեալ, յաճախեցին խանգարմունք 'ի բարբառ անդր, մա-նաւանդ ընդ երեսնամեայ ժամանակս պատերազ-մին։ Դարձեալ և յեւթնևտասներորդ դարու բազ-մութիւն գաղղիացւոց անցեալ 'ի Գերմանիա, բա-զում խորթ բառս ընդ հարազատսն խառնեցին, որք և ցարդ վարին 'ի խօսս։ Այլ ընտիր և յստակ բար-բառոյն աւանդողք կացին բանաստեղծքն Կլոբ-շթոք, Վիլանտ, Կեօթէ, Պիւրկէռ, Ֆոս, Հէռտէռ, Ռամլէռ, Էնկէլ և Շիլլէռ, և քերականք Ատե-լունկ, Հայնաց, Մոռից, Ռիւտիկկէռ, Էպէրհառտ, Կինտերլինկ, Կամբէ, Հայնսիուս, այլովքն հան-դերձ, զորոց զգիրս պարտ է ամենեցուն յաճախ ըն

թեռնուլ, և հետևել նոցին առ 'ի վարժ ընտիր շարադրութեան գերմանականին ։

Ոչ ինչ հաւաստեաւ մարթի ասել՝ թէ ուստի գերմանականն բարբառ ածանցեալ իցէ, ոմանք 'ի հնդկայնոյն ասեն, կամ մանաւանդ 'ի պարսկականէն, վասն բառից ինչ նմանաձայնութեան. զոր օրինակ Bruder (պրուտէր), պիրատէր, որ է եղբայր. Tochter (Թոխթէր), Թուխթէր, որ է քոյր, և այլն։ Այլք անդստին 'ի նմին արմատոյ յունականին բարբառոյ ասեն զսա ածանցեալ. իսկ Մորհոֆ ոմն յաւելու զյունականն 'ի հին գերմանականէն յառաջ ածել՝ թերևս 'ի համեմատութենէ բառից ինչ, որ բազմավրէպ գուշակութիւնն է. զի և հայերէն բարբառոյ են ինչ բառք նմանաձայն ընդ գերմանականին, զոր օրինակ շիլ, շաշէ, ասի և գերմաներէն schiel (շէլ) ։

Առ բազմակերպ զանազանութեան այսր բարբառոյ՝ հարկ համարեցաւ Ադելունկ քերթող յուսումն ընտիր բարբառոյ յղել զուսանողս 'ի Մայզն քաղաք Սաքսոնիոյ. այլ արդ ամենայն ուրեք յաճախեաց այն առ գիտունս, ոչ 'ի քաղաքս և եթ՝ այլ և յաւանս, վասն որոյ և մեք զայն բարբառ ընտրեցաք ։

Ի դժուարին յայս վաստակ գեր 'ի վերոյ քան զկար մեր համարձակիմք 'ի խնդրոյ մերազնեայց վաճառականաց, որոց ընդ գերմանացիսն գոլով առևտուր՝ 'ի վարժս նոցին բարբառոյ գտցեն սովաւ դիւրութիւն ։ Վասն որոյ խօսեցեալ ըստ կարգի 'ի գիրս յայս նախ զտառից և զհնչմանց նոցա, ապա յաղագս մասանց բանի, և երրորդ յաղագս համա-

| Գոթացի | | Լատինաց | | | |
|---|---|---|---|---|---|
| Գլխագիր : | Բոլորագիր · | Գլխագիր · | Բոլորագիր · | Անուն · | Զօրութիւն : |
| A | a | A | a | ա | Ա |
| Ä | ä | AE | ä | աէ | Է |
| B | b | B | b | պէ | Պ |
| C | c | C | c | ցէ | Ց · Ձ և Ք |
| | ch | CH | ch | ցէ հա | Խ |
| D | d | D | d | տէ | Տ |
| E | e | E | e | է | Է |
| F | f | F | f | էֆ | Ֆ |
| G | g | G | g | կէ | Կ |
| H | h | H | h | հա | Հ · Յ |
| I | i | I | i | ի | Ի |
| | j | J | j | եօտ | Ե · Յ |
| K | k | K | k | քա | Ք · Գ |
| L | l | L | l | էլ | Լ |
| M | m | M | m | էմ | Մ |
| N | n | N | n | էն | Ն |
| O | o | O | o | օ | Օ |
| Ö | ö | OE | ö | օէ | ԷՕ · կամ Է |
| P | p | P | p | բէ | Բ · Փ |
| Q | q | Q | q | քու | Գ · Ք |
| R | r | R | r | էր | Ր · Ռ |
| S | ſ s | S | s | էս | Ս · Զ |
| | | | sz | էս ցէթ | Ս |
| | | | szh | էս ցէ հա | Շ |
| T | t | T | t | թէ | Թ · Դ |
| U | u | U | u | ու | ՈՒ |
| Ü | ü | UE | ü | ուէ | ԻՒ կամ Ի |
| V | v | V | v | ֆէ | Ֆ կամ Վ |
| W | w | W | w | վէ | Վ |
| X | x | X | x | իքս | ՔՍ |
| Y | y | Y | y | իփսիլօն | Ի |
| Z | z | Z | z | ցէթ | Ց · Ձ |

Իսկ սովորաբար ընթեռնուն ըստ կարգի լատի-նական այբուբենից . զր

A, b, c, d, e, f, g, h, i, k, l, m, n, o, p, q, r, s, t, u, v, w, x, y, z. 'Ի սոցանէ, ձայնաւորք (Selbstlaut կամ Stimmlaut) են տառքս՝ a, e, i, o, u, յորոց a, o, u, ասին փոփոխական ձայնաւորք (Umlaut կամ Doppelbuchstaben). զի ունելով նոցա զտառն e զօ-րութեամբ կամ ներգործութեամբ զկնի իւրեանց՝ փոփոխեն զհնչումն, զր ae կամ ä, հնչի է, oe կամ ö էօ կամ է, և ue կամ ü իւ կամ ի. և այսպէս լինին ութ ձայ-նաւորք a, ä, e, i, o, ö, u, ü: Օւգեալ 'ի մի երկուց ձայնաւորաց՝ կազմին երկբարբառք (Doppellaute կամ Diphtonge) ai, այ, au, աու, äu, այ, ei, այ, oi, օյ, ui, ույ. զր. Kaiser, (քայզէր). Կայսր, իմբէրաթօր շահր. և այլն:

Իսկ մնացեալ տառքն են բաղաձայնք (Mitlaut), b, c, d, f, g, h, j, k, l, m, n, p, q, r, s, sz, t, v, w, x, z. Որքս բաժանին 'ի գերմանացւոց 'ի շրթնա-ձայնս. w, b, p, f, v, m. յատամնաձայնս s, sz, z, sch. 'ի քմաձայնս ch, g, k, j. 'ի լեզուաձայնս d, t, l, n, r, և 'ի հագագային h: Յերկուց բաղաձայնից լինին երկբաղաձայնքս (Doppelmitlaute), ff, mm, ck, ll, ss, tt, tz, և այլն. զորս յընթեռնուլն պարտ է հնչել որպէս կրկնակ, իսկ զck որպէս մի միայն կ կամ ք. և զtz, որպէս ց կամ ծ:

## ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՁԱՅՆԱՒՈՐԱՑ

A. հնչի որպէս զմերս Ա, բայց երբեմն երկայն. որ-պէս եթէ աա կամ ա՛ զր. Bart, (պա՛րթ) մօրուք, ածել. sprach, (ըշբրա՛խ) ասէր, խօսէր: Իսկ եր-բեմն սուղ. զր. als (ալս), որպէս, քան . ab (ապ), 'ի վայր, աշտէ . bald (պալտ), իսկոյն, հեմէն:

Ae. ä, արտասանի որպէս աէ, կամ է երկայն. որ-պէս է՛. զր. Kläger, (քլէկէր) դատախազ, պահանջող. tä-glich, (թէկլիխ) օր ըստ օրէ, հանապազօրեն հանապազ. կամ սուղ որպէս է, զր lästig, (լէսթիկ) ձանձրացուցիչ, ծանրա-բեռն: Իսկ երբեմն հնչի առանց զանազանութեան

որպէս զմերս է. օր. rächen, (ռէխն) վրէժխնդիր լինել, էօճ ալմագ ։

E. ունի զերիս հնչմունս. նախ՝ որպէս զմերս է, օր. gehen, (կէըն) երթալ, կիթմէք. երկրորդ՝ որպէս է, օր. beten, (պէթն) աղաչել, եալվարմագ. geben, (կէպն) տալ, վէրմէք. երրորդ ոմն ը. օր. stehen, (շթէէըն) կալ, դուրմագ. sprechen, (շբրէխըն) խօսել, սէօյլէմէք. gehen, (կէէըն) երթալ, կիթմէք ։

I. նոյն է ընդ մերս Ի ։

O. որպէս զմերս (), բայց երբեմն երկայն, օր. Ton, (թօ՛ն) ձայն, սէսս. և երբեմն սուղ, օր. Gott, (կօթթ) ա̅ծ, ալլահ ։

Oe կամ ö, չէ պարտ շփոթել զսա ընդ եւ, որպէս լսի սովորաբար յԻտալիա, օր. schön, (շէօ՛ն) և ոչ (շէ՛ն) գեղեցիկ, կիւզէլ. և է երկայն. որպէս König, (քէօ՛նիկ) թագաւոր, փատիշահ. և սուղ ՚ի Wörter, (վէօրթէր) բառք, լագըրտըլէր ։

U. հնչի որպէս ու. մերթ երկայն, որպէս Buch, (պուխ) մատեան, քիթապ. և մերթ սուղ, որպէս Kunst, (քունսթ) արուեստ, սէնաաթ ։

Ue կամ ü, որպէս իւ, չէ ուղիղ զոր ընթեռնումն յԻտալիա որպէս ի, այլ միշտ որպէս իւ, և է երկայն ՚ի բառն über (իւպէր) ՚ի վերայ, իւսթիւնէ. և սուղ, ՚ի Glück (կլիւք) բաղդ, պախթ. իսկ մեք ՚ի կիր արկանեմք զսա որպէս ի և զվերոյգրեալն Oe կամ ö, որպէս է, վասն լինելոյ մեր յԻտալիա, ՚ի դիւրութիւն խօսելոյ մերազնեայ համբակաց ընդ աւստրիացիս. բաց ՚ի բառից nützen, (նիւցըն) օգտել, ֆայտա էթմէք. nützlich, (նիւցլիխ) շահաւէտ, ֆայտալը ։

Երկու ձայնաւորք ՚ի միասին որպէս aa, ee, oo, ոչ են երկբարբառք, այլ երկարութիւն տան ձայնին, օր. Haar, (հա՛ր) գէս, սաչ. See, (սէ՛) լիճ,

չէօլ. ծով, տէնիզ. Schoos, (շօս) ծոց, գօյն ։ Բայց ee երբեմն արտաասանի որպէս զերկավանկս. Նախ՝ ՚ի բաղադրութիւն կամ ՚ի բարդութիւն, զր. beendigen, (պէ-էնտիկըն) կատարել, թէմամ էթմէք. և երկրորդ՝ ՚ի վերջ վանկին՝ եթէ յաջորդ վանկն սկսանի e իւ. զր. Se-en, (զէ-էն) ծովք, տէնիզլէր. Arme-en, (արմէ-էն) բանակք, օրտուլար. որք են ՚ի տեղի See-en և Armee-en, որք անվայել են ։

Ie, ՚ի միասին հնչի որպէս i երկայն, բաց ՚ի բառից ինչ մանաւանդ յեկամուտից, յորս հնչի որպէս իէ անջատեալ. զր. knien, (քնի-էն) ծունր դնել, տիզ չէօքմէք. Historie, (հիսթօրիէ) պատմութիւն, հիքեայէթ. Lilie, (լիլիէ) շուշան, զամպագ ։

Զերկբարբառքս ai, äu, պարտ է որոշել յարտասանելն որպէս զսաքսոնիացիս ՚ի ei և eu երկբարբառից. զր. Saite, (սայթէ) լար, քիրիշ. seite, (զէյթէ) կողմն, թարաֆ. Waise, (վայզէ) որբ, էօքսիւզ. weise, (վէյզէ) գիտուն, ալիմ. Häute, (հայթէ) մորթք, տէրիլէր. heute (հէօյթէ) այսօր, պուկիւն ։ Տարբերութիւնք ձայնի երկբարբառիցս քաջ իսկ երևին ՚ի խօսս Պրուսաց և սաքսոնիացւոց, և մանաւանդ բնակչացն Մայզն կամ Մայսսայն քաղաքին ։ Իսկ եթէ իցեն անջատ գրեալք, չէ պարտ շփոթել զսոսա ընդ ae, oe, և ue, այլ հնչել զերկոսին ևս որիշ որիշ, զր. Aloe, (ալօէ) հալուէ, էօտ աղաճը. Phaethon, (ֆաէթօն) Փայեթօն, որդի արևու, կիւնէշ շահզատէսինին ֆաէթօն իսմի տիր ։

## ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ ԲԱՂԱՁԱՅՆԻՑ

B, b, է որպէս զմերս Պ. և եթէ զt զկնի ունիցի, յայնժամ հնչի որպէս Բ կամ Փ. զր., Geliebte, (կէլիէպթէ) հոմանի, սէվկի. ՚ի վերջ բառից կամ ՚ի վերջին վանկին արտասանի նոյնպէս. զր. Lob, (լօփ) գովութիւն, մէտհ. gelb, (կէլփ) դեղին, սարը. hübsch, (հիւփշ կամ հիփշ,) գեղեցիկ, կիւզէլ ։ Նոյնպէս եթէ նախադաս իցէ տառիցս, n, h, s, զր. Begräbniss, (պէկրէփնիս) թաղումն, տէֆն. Grobheit, (կրօփհայթ) բրտութիւն, խօրէօթլըք ։

C, c, Նախադաս բաղաձայնից, եւ և ձայնաւո֊րացս a, o, u, միշտ հնչի որպէս զք կամ Կ. զր. Credit, (քրէտի՛թ) յարգ, էթիպար. փոխ, վէրէսի. Sclave, (սքլա՛ֆէ) գերի, էսիր, եէսիր. Capital, (քա֊փիթալ) գլուխ դրամոյ, սէրմայէ. Companie, (քոմ֊փանի՛) ընկերութիւն, օրթագլըք: Երկրորդ՝ յառա֊ջոյ ձայնաւորացս. ä, e, i, ö, ü, w, y, արտասանի որպէս զց կամ Ց. զր. Cäsar, (ցէ՛զար) կայսր, չա֊սար. Cicero, (ցի՛ցէրօ) Կիկերոն, պէր ադէմ իսմի. Cey-lon, (ցէ՛յլօն) Սէյլան կղզի, սէյլան ադասը. Cypres-se, (ցիփրէսէ) նոճի, սէլվի:

Ch, ch, Առաջին՝ հնչի որպէս զԽ, բայց է զի փափ֊կահնչիւն ընդ մէջ խ և հ տառից (որպէս զքէի Յունաց.) զր. Brettchen, (պրէթխէն) փոքր տախ֊տակ, թախթաճըք. suchen, (սուխէն) որոնել, արա֊մաք. և է զի սաստկահնչիւն որպէս խ կատարեալ (կամ խը Տաճկաց). զր. sicher, (սի՛խէր) ապա֊հով, էմին. lachen, (լա՛խէն) ծիծաղել, կիւլմէք: Եր֊կրորդ՝ որպէս զք կամ Կ, եթէ իցէ ՚ի սկիզբն բա֊ռից. զր. Charfreytag, (քարֆրայթագ) աւագ ուր֊բաթ, պէօյիւք ճումա. Christ, (քրիստ) Քրիստոս, մէսիհ. դարձեալ եթէ գուցէ զկնի նորա տառս s, զր. Fuchs, (ֆուքս) աղուէս, թիլքի. Wachs, (վաքս) մեղրամոմ, պալ մումու: Երրորդ՝ որպէս զՇ, բայց ՚ի գաղղիական բառս եւեթ. զր. charmant, (շարմանթ) սիրալի, տիլպէր. charletan, (շարլըթան) ընդվայ֊րախօս, լաֆազան:

D, d, որպէս զՏ:

F, f, Ֆ:

G, g, Կ. բայց յետադաս գոլով երբեմն ոչ լինի ուղղաձայն, զր. singen, (սինկէն) երգել, թիւր֊քիւ չաղըրմաք, էյլէնի օքումաք. Pfingsten, (բֆինկսթէն) հոգեգալուստ, կիւլ պայրամը. բայց ՚ի բարդեալ կամ ՚ի բաղադրեալ բառից, յորս պահի ան֊վրէպ հնչումն ոչ և գի, զր. un-gern, (ունկէրն) ակա֊

մայ, կէչմէքլըմէքլ. և այլն: Իսկ 'ի հետևեալ բառս հնչի որպէս գէ կամ գ. զր langsam, (լանկսամ) յամր, եավաշ. vergänglich, (ֆէրկէնկլիխ) անցաւոր, կէչիճի:

H, h, Գոյիրս այս երբեմն արտասանի, նախ 'ի սկզբան բառից՝ որպէս հ այզզու. զր hoch, (հօխ) բարձր, եիւքսէք. Haar, (հար) գէս, սաչ. Horn, (հօռն) եղջիւր, պօյնուզ: Երկրորդ՝ անձայն 'ի վերջ միավանկ բառից. զր Stroh, (շդրօ) յարդ, սաման. Schuh, (շու) ոտ, բապուչ: Երրորդ՝ յետադաս ձայնաւորի՝ մանաւանդ եթէ իցէ նախադաս տառից l, m, n, r, և u, ևս և ընդ մէջ երկուց ձայնաւորաց, տայ երկարութիւն ինչ ձայնին, որպէս. Zahl, (ցալ) թիւ, սայը. nehmen, (նէէմէն) առնուլ, ալմագ. Jahr, (եար) ամ, եըլ. gehen (կէէն) գնալ, կիթմէք: Այլ 'ի բարդութիւնս պահէ h զիւր թաւ հնչումն, զր behaupten, (պէհաուբդըն) 'ի վեր ունել, եօքարը քալտըրմագ: Տես և ch, ph, և th.

I, j, բաղաձայնս ունի զտեղի գրոցս է, և յ. որպէս 'ի բառս եղն, և էայ. իսկ 'ի գաղղիական բառս ժի, զր. Iournal, (ժուռնալ) օրագիր, եէվմիյէ, ևն:

K, k, որպէս զԳ կամ Ք:

L, l, Լ:

M, m, Մ:

N, n, Ն:

P, p, Բ կամ Փ:

Pf, pf, չէ պարտ զսա որպէս զլոկ Ֆ արտասանել, այլ իբրև զբՖ, խառն հնչմամբ երկուցն ևս որպէս Pferd, (բֆէրտ) ձի, աթ:

Ph, ph, հնչեալ որպէս Ֆ, միայն յայլազգական բառս ևեթ գտանի. զր. Philosophie, (ֆիլօզօֆի) փիլիսոփայութիւն, իլմ հիքմէթ:

Q, q, առանց յետադաս ու՝ ոչ 'ի կիր արկանի, զր. Quelle, (քուէլլէ) ակն աղբեր, չէշմէ ։,

R, r, Ռ ։

S, s, երբեմն՝ մանաւանդ ընդ մէջ երկուց ձայնաւորաց հնչի որպէս զ. զր. sehen, (զէէն) տեսանել, կէօրմէք. Esel, (էզըլ) էշ, էշէք. Mäuse, (մօյզէ) մկունք, սըչանլար. kommen sie, (քօմմէն զի) եկայք այսր, կէլէնիզ պուրայա ։ Նաև երբեմն որպէս ս, զր. setzen, (սէցըն) նստել, օթուրմաք. Haus, (հաուս) տուն, էվ. Sie, (սի) տէրութիւնդ ձեր, զիւնաբիւնիզ. այլ եթէ ուր ուրեք զ կամ ս պարտ իցէ ընթեռնուլ՝ 'ի փորձոյ վարժիմք ։ Եթէ զհետ իւր ունիցի զտառս t և p, հնչի հասարակօրէն որպէս շ. զր. Stein, (շթայն) քար, թաշ. Sprache, (շբրախէ) բարբառ, տիլ. verstehen, (ֆէրշթէէն) իմանալ, անլամաք. բաց 'ի յերկրորդ դիմաց բայից և 'ի գերադրականաց, յորս պահի հնչումն ս'ի, զր. du bist, (տու պիսթ) դու ես, սէն սին. beste, (պէսթէ) ես բարեգոյն, էն էյի. ևս և 'ի բառս յայսոսիկ Christen, (քրիսթըն) քրիստոնեայք, քրիսթիանլար. gestern, (կէսթէրն) երէկ, տիւն. flüstern, (ֆլյուսթէրն) շշնջել, ֆըսըլտամաք. husten, (հուսթըն) հազալ, էօքսիւրմէք. հնչի և ս որպէս զշ յառաջ քան զc, k, l, m. զր. sclave, sklave, (շքլավէ) գերի, էսիր. slavonien, (շլավօնիէն) Սիւրիկէ, շլէավօն մէմլէքէթի. smaragd, (շմարագտ) զմրուխտ, զիւմրիւտ ։ Իսկ ուր պարտն է անվրէպ ս արտասանել, գրի ss. զր hass, (հաս) ատելութի, պուղզ. schloss, (շլօս) աղխք, քիլիտ ։

T, t, Դ կամ Թ. բայց յեկամուտ բառս զկնի իւր ունելով զio ընթերցեալ լինի որպէս ց. զր. portion, (բօրցիօն) մասն, հիսսէ. իսկ tz, հնչին 'ի միասին որպէս ց կամ ծ ։

V, v, հասարակօրէն Փ հնչի 'ի գերմանացւոց. այլ է զի՝ մանաւանդ 'ի յատուկ անուանս լինի որպ վ ։



W, w, Վ:

X, x, ՔՍ:

Z, z, Զ. Ց:

Այսչափ ինչ խօսեցեալ ՚ի տեղւոջս, դարձեալ միւսանգամ լիցի մեզ բան զգրոց ՚ի յարմարագրութեանն, տես անդ:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### ՅԱՂԱԳՍ ՎԱՆԿԻ

Վանկն՝ (die Silbe կամ Spelle) է միաբանութիւն ձայնաւոր և բաղաձայն տառից, որովք լինի հնչումն ինչ յօդելի. զոր acht, (ախտ) ութ, սէքիզ. Nacht, (նախտ) գիշեր, ագշամ: Դիցուք աստանօր և զօրինակ հեգելոյ ՚ի դիւրութիւն համբակաց:

ba, bä, be, bi, bo, bö, bu, bü,
պա, պէ, պէ, պի, պօ, պէօ կամ պէ, պու, պիւ կամ պի,

ab, äb, eb, ib, ob, öb, ub, üb,
ապ, էպ, էպ, իպ, օպ, էօպ կամ էպ, ուպ, իւպ կամ իպ,

bai, bei, beu, bau, bäu, bey, aub, äub, eib, eub,
պայ, պայ, պայ, պաու, պայ, պայ, աուպ, այպ, այպ, այպ,

bla, ble, bli, blo, blu, dra, dre, dri, dro, dru,
պլա, պլէ, պլի, պլօ, պլու, տրա, տրէ, տրի, տրօ, տրու,

kna, kne, kni, kno, knu, gra, gre, gri, gro, gru,
քնա, քնէ, քնի, քնօ, քնու, կրա, կրէ, կրի, կրօ, կրու,

sta, ste, sti, sto, stu,
սթա, սթէ, սթի, սթօ, սթու,
շթա, շթէ, շթի, շթօ, շթու,

schra, schre, schri, schro, schru,
շրա, շրէ, շրի, շրօ, շրու,

bieg, biegst, biegt, bog, pflog,
պիկ, պիկսթ, պիկթ, պօկ, փլօկ,

blau, schwarz, stumm, sieben, zwölf,
պլաու, շվարց, շթումմ, սիպն, ցվէլֆ, և այլն։

Der Herr Leh-rer er-mah-net mich, ich soll vor-
տէր հէրր լէ-րէր էր-մահ-նէթ միխ, իխ սօլլ ֆօր-
sich-tig seyn im Ge-hen, und im sprin-gen,
սիխ-թիկ սայն իմ կէ-ըն, ունտ իմ ըշփրին-կըն,
ich soll nicht mit Mes-sern, Ga-beln und Sche-
իխ սօլլ նիխթ միթ մէս-սէրն, կա-պըլն ունտ շէ-
ren spie-len.
րըն ըշփի-լըն։

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

### ՅԱՂԱԳՍ ԲԱՌԻ

Բառն (das Wort) է բաղկացութիւն վանկից։ Եւ 'ի բառից ոմանք են միավանկք (einsilbig) որք, Tisch, (թիշ) սեղան, սօֆրա. Stuhl, (շթուլ) աթոռ, քիւրսի. wie, (վի) որպէս, նէճէ. և այլք բազմավանկք (mehrsilbig) որք Knabe, (քնապէ) տղայ, օղլան. Bruder, (պրուտէր) եղբայր, գարտաշ. empfinden, (էմֆին-տըն) զգալ, դույմագ. unvergleichlich, (ուն-ֆէր-կլայխ-լիխ) աննման, պէնզէրսիզ. և այլն։

'Ի բառից ոմանք են նախագաղափար (Stammvort), որք Berg, լեառն, տաղ. Mann, այր, էր, և այլն. և կամ ածանցականք (abgeleitetes Wort), որք Gebirge, լերինք կամ լեառն, տաղլար, տաղ, 'ի բառէս Berg. männlich, արական, մէրտանէ, 'ի բառէս mann. և ոմանք՝ պարզ (einfach) որք. Haus, տուն, էվ. roth, կարմիր, գըրմըզը, և այլն. կամ բարդ՝ (zusammengesetzt) որք. Hausvater, հայր տան, պէր էվտէ օլան պապա. rothgelb, դեղին հարեալ 'ի կարմիր, գը-

ղըւ ստուր. Feldbaukunst, երկրագործութիւն, ֆէլտ-պաուգունսդ. և այլն։ 'Ի բարդութեան միշտ վերջին բառն է նշանակիչ իրին, որ. Oelbaum, ձիթենի, էօլպաում ծառ. Baumöl, ձէթ, պաումէօլ իւղ. և այլն։ Այլ է ուրեք և այլափոխել նշանակութեանն, որ. stehen, կալ, շդէէն. ver-stehen, իմանալ, ֆէրշդէէն. Sohn, որդի, զօն. Stief-sohn, ուրջու, շդիֆզօն։

## ԲԱՂԱԴՐՈՒԹԻՒՆ ԲԱՌԻՑ ԸՆԴ ԱԾԱՆՑԱԿԱՆՍ

Ածանցական մասնիկք՝ որ յօդելով յարմատական բառս՝ տան նոցա նշանակութիւն ինչ երկրորդական, են երկտեսակ։ Նախայօդ (die Vorsilbe) որ յօդի յառաջոյ բառից, և վերջայօդ (die Nachsilbe) զի յօդի 'ի վերջն բառից։ Գործածական նախայօդքն են ant, ent, emp, be, ge, er, un, ur, ver, zer, որ. Ant-vort, պատասխանի, անդվորդ. be-glückt, բաղդաւորեալ, պէգլիւգդ. emp-finden, զգալ, էմֆինտէն. ent-sagen, հրաժարել, էնդզագէն. Ge-hör, լսողութի, գէհէօր. er-zwingen, բռնութբ 'ի ձեռս բերել, էրցվինկէն. Un-schuld, անմեղութի, ունշուլդ. Ur-sprung, սկզբնաւորութիւն, արմատ, ուրշբրունգ. ver-sprechen, խոստանալ, ֆէրշբրէխէն. zer-stören, եղծանել, ցէրշդէօրէն. և այլն։ Վերջայօդքն են բազումք. և են. and, bar, chen, el, en, end, er, ern, ei, haft, heit, ig, icht, ing, inn, isch, keit, lein, lei, ling, lich, licht, miss, sal, sel, selig, sam, schaft, thum, ung, zig, ssig, որ. Heil-and, փրկիչ, հայլանդ. dank-bar, երախտագէտ, դանգպար. Mäd-chen, աղջիկ, մէդխէն. Zweif-el, կասկածանք, ցվայֆէլ. Lad-en, կրպակ, լատէն. Töpf-er, բրուտ, դէօբֆէր. folg-ern, մակաբերել, ֆոլկէրն. Fischer-ei, ձկնորսութիւն, ֆիշէրայ. wahr-haft, ճշմարտապէս, վարհաֆդ. Wahr-heit, ճշմարտութիւն, վարհայդ. holz-ig, փայտաւոր, հոլցիգ. holz-icht, փայտանման, հոլցիխդ. fleisch-icht, մսուտ, ֆլայշիխդ. Här-ing, ծովատառեխ, հէրինգ. König-inn, թագուհի, քէօնիգին. kind-isch, տղայական, քինդիշ. Heilig-keit, սրբութիւն,

օղլանճըգ. Kind-lein, փոքրիկ տղայ, չօճուգճազ. Iüng-ling, երիտասարդ, տէլի գանլը. wahr-lich, յիրաւի, սահիհ, կէրչէք. Hinder-niss, արգել, էնկէլ. Lab-sal, զարմանիչ, շիֆալը. folg-sam, հնազանդ, մուտի. Freund-schaft, բարեկամութիւն, տօստլուգ. Reich-thum, հարստութիւն, զէնկինլիք. Rett-ung, փրկութիւն, գուրթուլուշ. vier-zig, քառասուն, գըրգ. dreis-sig, երեսուն, օթուզ. և այլն։

Ածանցումն 'ի գերմանացիս լինի եւս և այլայլութեամբ ձայնաւորաց. որ. Vogel, թռչուն, գուշ. vö-gel, թռչունք, գուշլար. leuchten, լուսաւորել, շըլըգ վէրմէք. Licht, լոյս, շըլըգ. Gang, երթ, կիտիշ. ging, երթայր, կիտէր իտի։ Երբեմն փոփոխութեամբ բա-ղաձայնի, որ. Geld, դրամ, ագչէ. gelten, արժել, տէյմէք. Schnitt, հատումն, քէսիշ, schneiden, հատա-նել, քէսմէք։

Այսու եղանակաւ ածանցին գոյականք 'ի գոյա-կանաց, որ. Sohn, որդի, օղուլ. Söhn chen, որդեակ, օղուլճուգ. Fleisch, միս, էթ. Fleischer, մսավաճառ, գասաբ։ Երկրորդ՝ գոյականք 'ի բայից. որ. Gebäude, շինուածք, եափը. 'ի բայէս bauen, շինել, եափմագ. Gedanken, մտածութիւն, ֆիքր, 'ի բայէս denken, զմտաւ ածել, խորհել, տիւշիւնմէք։ Երրորդ՝ ածա-կանք 'ի բայից. որ. beträchtlich, մեծ, պէօյիւք. 'ի բայէս betrachten, մեծ ինչ գրել, պէօյիւք շէյ սայ-մագ։ Չորրորդ՝ ածականք 'ի գոյականաց, որ. männ-lich, արական, մուզէքքէր. 'ի բառէս Mann, այր, էր. glücklich, բաղդաւոր, պախթլը. 'ի բառէս Glück, բաղդ, պախթ. և այլն։ Հինգերորդ՝ բայք 'ի գոյա-կանաց. որ. nageln, բեւեռել, մըխլամագ, 'ի բառէս Nagel, բեւեռ, էնքսէր, մըխ. kleiden, զգեցուցանել, կիյտիրմէք, 'ի բառէս Kleid, զգեստ, ռուբա։ Վեցե-րորդ՝ բայք 'ի բայից. որ. lächeln, ժպտել, կիւլիւմ-սէմէք, 'ի բայէս lachen, ծիծաղել, կիւլմէք. besuchen, այց առնել, զիեարէթ էթմէք, 'ի բայէս suchen, որոնել, արամագ։ Եօթներորդ՝ բայք ածանցին նաև յայլոց մասանց բանի. որ. erwiederen, անդրէն տալ, կէրի վէրմէք, 'ի բառէս wieder, անդրէն, թէքրար, կէրի. ge-nügen, գոհ լինել, խօշնուտ օլմագ, 'ի բառէս genug,

բաւական, էէլէր. vereiteln, ոչնչացուցանել, պօշ չըգարմագ, 'ի բառէս eitel, սնոտի, պօշ։

## ՅԱՂԱԳՍ ՇԵՇՏԻ

Շեշտն (Wortton կամ Accent) տաճկական և գաղղիական լեզուաց՝ որք 'ի վերջին վանկս բառիցն ունին՝ դիւրաւ է դնել ընդ կանոնաւ, բայց գերմանականին կարի դժուարին. զի մերթ 'ի սկզբան դնի, մերթ 'ի վերջն և մերթ 'ի մէջն. և ահա կարգեմք զկանոնսն զոր միանգամ աւանդեն քերականք։ Նախ՝ շեշտն կախի զարմատական նշանակութենէ բառից. զր. 'ի բառն Vergébung, շեշտի միջին վանկն geb, վասն զի զարմատն ցուցանէ բային geben, տալ, վէրմէք. որ միացեալ ընդ մասնկանցս ver և ung, նշանակէ տալ ումեք զթողութիւն, ներել, և այլն. բայց 'ի բառից ինչ, զր. lebéndig, կենդանի, դիրի. զի ըստ վերոգրեալ կանոնի շեշտելով զարմատական բառն՝ պարտ էր ասել lébendig, որ չէ այնպէս։ Նոյնպէս և բառք ei ածանցական մասնկաւ բաղկացեալք, 'ի վերայ մասնկանն ունին զշեշտն. զր. Kinderéi, և ոչ Kínderei, տղայութիւն, չօճուգլուգ. Spielerḗi, ոչ Spíelerei, խաղալիկ, օյունճագ. մանաւանդ 'ի բառս այլազգականս. զր. Soldát, զինուոր, ասքէր. Altár, սեղան տաճարաց, միհրապ։ 'Ի բազմավանկ կամ 'ի բարդեալ բառս՝ յորս պարտ է յերկուսին տեղիս շեշտել, շեշտի սաստկութեամբ վանկն կամ բառն որ ունի զառաջին նշանակութիւնն, զոր կոչեն (Haupt ton) գլխաւոր շեշտ. իսկ զերկրորդն մեղմով ասացեալ (Nebenton կամ halber Ton) այս է երկրորդական. զր. 'ի բառն Gesellschaft, ընկերութիւն, օրթագլըգ, բառն gesell ունի զառաջին նշանակութին (որ է միաւորութիւն կամ ժողով), վասն որոյ և զգլխաւոր շեշտումն. իսկ ածանցականն schaft, ունի զերկրորդականն, և հնչի Geséllschaft.

Շեշտն երկակի է, երկար, զր. Schaaf, (շա՛ֆ) ոչխար, գօյուն. schief, (շի՛ֆ) կոր, էյրի. և սուղ, զր. sitzen, (սի՛ցն) նստել, օթուրմագ. plötzlich, (բլէ՛ցլիխ) յանկարծ, անսըզըն։ Ըստ կանոնաց զերկարն ունին

նախ՝ միավանկք յանգեալք 'ի ձայնաւորս կամ յերկձայնս. զր. da, (տա՛) աստ, արանդա. ja, (եա՛) այո, դեւն. nie, (նի՛) ոչ երբեք, հեչ դեր չաման. die, (դի՛) այս, այդ, այն, դու, լու, օ. blau, (պլա՛ու) կապոյտ, մավի: Երկրորդ՝ բառք՝ յորս գրին aa, ee, oo, ie, և h, զր. Saat, (սա՛թ) ցան, էքին. See, (զէ՛) ծով, տենիզ. լիճ, կէօլ. Thier, (թի՛ր) անասուն, հայվան. froh, (ֆրօ՛) գոհ, խօշնուտ: Երրորդ՝ բառք յանգեալք 'ի մի միայն բաղաձայն. զր. wer, (վէ՛ր) ով, քիմ. mir, (մի՛ր), ինձ, պանա. spät, (շբէ՛թ) անագան, կէճ. schön, (շէօ՛ն) գեղեցիկ, կիւզէլ. kam, (քա՛մ) գայր, կելիրտի: Բայց 'ի բազում հետևեալ միավանկ բառից. զր. ab, ob, das, des, was, es, bis, hin, in, weg, man, um, և այլն, պիտոյ էր ևս զբառսն grob, Lob, Hof, Rad, Gras, երկար հնչել՝ որպէս լսի 'ի տեղիս տեղիս Գերմանիոյ. վասն զի սեռականք նոցա երկայնին. զր. grobes, (կրօ՛պըս) Lobes, (լօ՛պըս), և այլք. սակայն սովորութիւն եդ 'ի նոսա շեշտ սուղ: Իսկ բառք առհասարակ յանգեալք յերկուս բաղաձայնս՝ սուղ ունին զշեշտն. զր. Fell, մորթ, տէրի. Ball, կաքաւ, խօրա. Lamm, գառն, քուզու. Herr, տէր, աղա. Stadt, քաղաք, շէհիր. Wand, որմ, տուվար. բայց 'ի բառից Bart, մօրուք, սաքալ. Krebs, խաչափառ, էէնկէչ. Magd, աղջիկ, քըզ. Mond, լուսին, այ:

## ՅՕԴՈՒԱԾ Դ.

### ՅԱՂԱԳՍ ՄԱՍԱՆՑ ԲԱՆԻ

Մասունք բանի (Redetheile) 'ի գերմանացիս են թուով ինն. ա. Hauptwort, գոյական. բ. Beiwort, ածական. գ. Fürwort, դերանուն. դ. Zeitwort, բայ. ե. Geschlechtswort, յօդ. զ. Zahlwort, թըւական անուն. է. Vorwort, նախադրութիւն. ը. Nebenwort, մակբայ. և թ. Bindewort, շաղկապ: Սոյն բաժանեն զսոսա ըստ Հայնզիուս քերթողին՝ յերկուս մասունս, 'ի հիմնական և յերկրորդական էութիւնս: Հիմնականքն են որք յայտնեն զնշանակութիւն ինչ ըստ ինքեան. և են գոյական, ածական,

դերանուն և բայ. իսկ երկրորդականքն են՝ որք որպէս զհպատակս առաջնոցն՝ յայտ առնեն զմիտս յառաջասացեալ բառից. և են յօդ, թուական անուն, նախադրութիւն, մակբայ և շաղկապ: Ըստ այսր շարակարգութեան յօրինեն զքերականութիւնս իւրեանց. իսկ մեք զհետ երթեալ զանազան ազգաց՝ դնեմք. ա. զյօդն. բ. զգոյական անունն. գ. զածական անունն. դ. զթուական անունն. ե. զդերանունն. զ. զբայն. է. զնախադրութիւնն. ը. զմակբայն. թ. զշաղկապն, և հուսկ յետոյ յաւելումք և զմիջարկութիւն, զոր գերմանացիք հանեն 'ի թուոյ մասանց բանի, որով լինին ըստ ամենայն թուով տասն. զորոց մի առ մի լիցի մեզ բան:

## ՅՕԴՈՒԱԾ Ե.

### ՎԱՍՆ ՀՈԼՈՎՄԱՆՑ ԵՒ ԽՈՆԱՐՀՄԱՆՑ ԸՆԴՀԱՆՐԱՊԷՍ

'Ի մասանց բանի ոմանք են փոփոխականք՝ որպէս գոյականք, ածականք, դերանունք, բայք, յօդք և թուական անուանք. և ոմանք անփոփոխք՝ որպէս նախադրութիւն, մակբայ, և շաղկապ: Այս փոփոխութիւնք քառակերպ են. և կոչին, հոլովումն, համեմատութիւն, սեռորոշութիւն և լծորդութիւն:

Ընդ հոլովմամբ անկանին գոյականք, ածականք, դերանուանք, յօդք և թուական անուանք. և ունին հոլովս (Fälle) ըստ Լատինաց վեց. զր.

erster Fall, կամ erste Endung, կամ Nominativ. ուղղական, ղինայի.
zweiter Fall, zweite Endung, Genitiv. սեռական, աուլի.
dritter Fall, dritte Endung, Dativ. տրական, հիփայի.
vierter Fall, vierte Endung, Accusativ. հայցական, նաուղի.
fünfter Fall, fünfte Endung, Vocativ. կոչական, նիփայի.
sechster Fall, sechste Endung, Ablativ. բացառական, ճէրրէ:

'Ի սոցանէ զչորեսին ևեթ 'ի կիր արկանեմք, զուղղականն, զսեռականն, զտրականն և զհայցականն. զի կոչականն լինի որպէս զուղղականն. և բացառականն՝ նախադրութեամբս von որ դնի յառաջոյ տրականին. զր. von dem Hause, 'ի տանէ, էվտէն:

'Ի ցուցանել զքանիօնութի իրաց կամ անձանց

ունիմք զթիւն (die Zahl կամ Numerus) եզական (die Einheit, die einfache Zahl, der Singular), և յոգնական (die Mehrheit, die mehrfache կամ vielfache Zahl, der plural)։

Յերկրորդն՝ որ է համեմատութիւն (die Vergleichungsstufe, der Vergleichungsgrad, die Komparation) վերածին միայն ածականք 'ի յերիս աստիճանս, 'ի դրականն (positiv), զր. schön, գեղեցիկ, 'ի բաղդատականն (komparativ,) schöner, գեղեցկագոյն, և 'ի գերադրականն (superlativ,) schönste, ամենագեղեցիկ։ Եւ եւս անուանին սոքա die erste, zweite, dritte Vergleichungsstufe; զր առաջին, երկրորդ, երրորդ աստիճան համեմատութեան։

Սեռորոշութիւնն (die Motion) է վասն ածականաց, դերանուանց և յօդից՝ 'ի նշանակել ոչ միայն զդէմս, զթիւս և զհոլովս, այլ և զսեռս նոցա՝ որոշեալ ինչ գրով, որ ասի սեռորոշական, զր. grosser Mann, այր մեծ, ուր մասնիկս er յարեալ 'ի վերջն ածականիս gross, ցուցանէ թէ բառս Mann արական է, և ինքն լինի ածական նորա. gutes Kind, բարի մանուկ, վանկն es է սեռորոշական 'ի նշանակել զչէզոքական սեռ բառիս Kind; schöne Frau, գեղեցիկ տիկին, յորում դնի միայն e տառն նշանակիչ իգական սեռի։ Այսպէս ունիմք երիս սեռորոշ տառս առեալ 'ի յօդից. er վասն արականի, e վասն իգականի, և es վասն չէզոքական սեռի։ Եթէ կամիցիմք որոշել զսեռս կանխաւ ասացեալ կամ ծանօթի իրիք կամ ուրուք, դնեմք զյօդն 'ի սկզբան՝ և ապա զածականն, յաւելլով 'ի վերջոյ նորա զe և հուսկ յետոյ զգոյականն. զր. der grosse Mann, այրն մեծ. die alte Frau, ծերացեալ տիկինն. das grosse Buch, մատեանն մեծ։ Ըստ այսմ grosser Mann, այր մեծ (ով և իցէ). իսկ der grosse Mann, այրն մեծ (զորմէ ասացաք կանխաւ կամ ծանօթ ոք)։

Լծորդութիւնն (die Konjugation կամ Abwandlung) ասի զփոփոխութենէ բայից. և ունի չորս պարագայս. եղանակ (Modus կամ die Art), ժամանակ (Tempus կամ die Zeit), դէմք (die Person), և թիւ (Numerus կամ die Zahl)։

# ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՅԱՂԱԳՍ ՄԱՍԱՆՑ ԲԱՆԻ

---

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### ՅԱՂԱԳՍ ՅՕԴԻ

Յօդն (der Artikel, das Geschlechtswort) է *մասնիկ ինչ հոլովական, որ մերթ յարեալ յանուանս կամ 'ի դերանուանս՝ յայտնէ զսեռն, զթիւն և զհոլով նոցա. և մերթ դնի առանձինն փոխանակ այլոյ բառի։ Վասն չունելոյ լեզուին մերոյ որպէս և Տաճկաց, Պարսից, Հունկարաց զյօդ՝ դժուարութեամբ ուսանիմք զայս մասն բանի. զի պարտ է գիտել և թէ այս նիշ բառ յորմէ սեռէ է և զոր յօդ առնու։ Արդ յօդիւ յայտ առնեն զսեռս բառից. և բաժանի յերկուս, որոշեալ* (bestimmt), *և անորոշ* (unbestimmt). *իսկ ըստ այլոց՝ որ լաւ ևս է՝ որոշիչ* (bestimmende), *և անորոշիչ* (nicht bestimmende). *զի տոքա ոչ որոշին, այլ որոշեն զյատկութիւն գոյականաց։*

*Որոշիչ յօդք են* der *առական*, die *իգական*, *և* das *չէզոք. և դնին 'ի բառս որք նշանակեն զորոշ ինչ տեսակ՝ ընդ որով են բազում անհատք. զր.* der Mensch ist sterblich, *մարդն (հայելով 'ի տեսակ նորա) է մահկանացու, ինսան էօլիւմլիւ տիւր։ Սոքա յայտնեն նաև զանուանս ազգաց, լերանց, անտառաց, ծովուց և գետոց. զր.* der Armenier, *Հայ.* der Ararat, *Մասիս լեառն.* die Donau, *Դանուբ, և այլն։ Ունին զորոշիչ յօդն ևս և ոմանք յանուանց գաւառաց որպէս զհասարակ անուն. զր.* die Türkei, *Տաճկաստան.* die Moldau, *Մոլդավիա։*

*Յօդն որոշիչ ոչ դնի, ա. 'ի վերայ յատուկ անուանց. զր.* Cäsar, *Կեսարոս.* Friedrich, *Փետերիկոս.* Nerses, *Ներսէս, ևն։ Կողմանց աշխարհի. զր.*

Abend, արևմուտք. Morgen, արևելք, ևն. Նա և 'ի վերայ բառիս ա̃ծ՝ եթէ նշանակեսցէ զաստեղծողն երկնի և երկրի. զի 'ի նշանակելն զա̃ծս՝ միշտ յօդիւ 'ի կիր արկանի : Բացառութիւն այսմ կանոնի է. ա. Եթէ յատուկ անուանն իցէ 'ի տեղի հասարակ անուան, պարտ է դնել զյօդն. օր. die Alexander unserer Zeit, Աղեքսանդրոսք մերում ժամանակի. ich lese den Moses Chorenenses, ընթեռնում զՄովսէս խորենացին, ո̃ր զգիրս խորենացւոյն : Եթէ յիշեսցի անուն ուրուք անարգանօք, օր. ich habe den Iohann gesehen, տեսի ես զՅովհաննէս (ծառային կամ անպատիւն) : Բ. 'Ի վերայ գոյականաց՝ որք ոչ զամբողջն այլ զմասն ինչ ցուցանեն. կամ որք զսեռն՝ զտեսակն և կամ զնիւթն միայն ընդհանրապէս նշանակեն. զոր օրինակ. Brod backen, եփել զհաց. [illegible] (և ոչ [illegible]). Wasser trinken, ըմպել զջուր, [illegible] (ոչ [illegible]) [illegible]. Geduld haben, ունել զհամբերութիւն, [illegible]. Bücher kaufen, գիրս գնել, [illegible]. և այլն : Օ ի դնելով զյօդն՝ նշանակէ որոշեալ ինչ. օր. backen Sie das Brod, եփեցէք զհացն, [illegible] : Գ. Բազում անգամ համառօտութեան սակս ոչ դնի յօդն, Նախ՝ 'ի պատուանունս ծանօթ անձանց. օր. Kaiser Franz, Փրանկիսկոս կայսր. 'ի ճակատս գրեանց. օր. Erster Theil, մասն առաջին. Deutsche Sprachlehre, քերականութիւն գերմանական. Vorrede, յառաջաբանութիւն : Երկրորդ՝ եթէ բազում գոյականք իցեն 'ի միասին. օր. Wahrheit, Gerechtigkeit, Freundschaft und Liebe, ճշմարտութիւն՝ արդարութիւն, բարեկամութիւն և սէր : Երրորդ՝ 'ի բազում առակակերպ ասացուածս. օր. Noth bricht Eisen, հարկն լուծանէ զօրէնս, [illegible] :

Յօդն որոշեալ հոլովի յեզականն՝ յերեսին սեռս իւր, իսկ 'ի յոգնականն է մի և նոյն յա̃մ սեռս. և հոլովի այսպէս.

| | ԵԶԱԿԱՆ | | | ՅՈԳՆԱԿԱՆ |
|---|---|---|---|---|
| | Արական. | Իգական. | Չէզոք. | Յամ սեռս. |
| Ուղղ. | der, | die, | das, | die, |
| Սեռ. | des, | der, | des, | der, |
| Տր. | dem, | der, | dem, | den, |
| Հայց. | den, | die, | das, | die. |

Յօդք անորոշիչք հասարակօրէն ցուցանեն զմի միայն առարկայ, որ վերաբերի յորոշեալ ինչ տեսակ՝ բայց առանց որոշելոյ զանհատն յատկապէս. զր. ich habe einen Menschen gesehen, տեսի ես զայր մի. յորում բառս ein, մի, ցուցանէ զանհատ ոք ՚ի տեսակէ մարդկութեան, իբրեւ ասել զոմն կամ զոք, առանց յայտնելոյ զանուն կամ զմականուն նորա։ Այս հոլովի սա կամ գոյականաւ եւ կամ միայնակ առանց գոյականի։

### ԳՈՅԱԿԱՆԱՒ

| | Արական. | Իգական. | Չէզոք. |
|---|---|---|---|
| Ուղղ. | ein, | eine, | ein, |
| Սեռ. | eines, | einer, | eines, |
| Տր. | einem, | einer, | einem, |
| Հայց. | einen, | eine, | ein. |

### ԱՌԱՆՑ ԳՈՅԱԿԱՆԻ

| | Արական. | Իգական. | Չէզոք. |
|---|---|---|---|
| Ուղղ. | einer, | eine, | eines կամ eins, |
| Սեռ. | eines, | einer, | eines, |
| Տր. | einem, | einer, | einem, |
| Հայց. | einen, | eine, | eines կամ eins, |



# ՅՕԴՈՒԱԾ Բ.

## ՅԱՂԱԳՍ ԳՈՅԱԿԱՆ ԱՆՈՒԱՆՑ

Գոյական անուն (Hauptwort կամ substantiv) այն է՝ որ ինքնին միայնակ վարեալ ՚ի բանս՝ ցուցանէ ուրուշեալ ինչ իր ։ Եւ բաժանի ըստ նշանակութեան ՚ի Յատուկ Eigenname կամ nomen proprium, զր. Iohann, Յովհաննէս, Եահէա. Konstantinopel, Կոստանդնուպօլիս, Իսթամպօլ ։ ՚Ի Հասարակ Gattungsname, կամ nomen appellativum, զր. Mensch, մարդ, ինսան. Fisch, ձուկն, պալըգ. և ՚ի Հաւաքական Sammelnamen, որ եղական ձայնիւ նշանակէ բազումս. զր. Nation, ազգ, միլլէթ. Truppen, գունդ, պէօլիւք ։

Են գոյականաց և պարագայք այլևայլ ըստ որոց փոփոխին, և են՝ Ձև die Art, Տեսակ Bildung, Թիւ die Zahl, Սեռ das Geschlecht, և Հոլովմունք die Beugung, զորոց մի ըստ միոջէ տեսցուք ։

## Ա. ՁԵՒ ԳՈՅԱԿԱՆԱՑ

Գոյականք ըստ ձևոյն կազմութեան կամ Պարզ են կամ Բարդ և կամ Բաղադրեալ ։

Պարզ է որ զմի ինչ իր ինքնին միայնակ նշանակէ առանց ընդ այլում բառի զօդելոյ. որպէս Rose, վարդ, կիւլ. Tag, օր, կիւն. Mann, այր, էր. Kopf, գլուխ, պաշ ։

Բարդ է՝ որ երկուց կամ աւելի ևս բառից միաւորութեամբ զմի ինչ ցուցանէ. զոր օրինակ. Halstuch, Թաշկինակ պարանոցի, պօղազ եաղլըղը. Taschenuhr, ժամացոյց կրելի, ճէպ սահաթը ։ Եւ այս բարդութիւն անուանց լինի կամ միութեամբ գոյականաց ընդ գոյականս, կամ ընդ ածականս, և կամ ընդ բայս, որպէս Tisch-tuch, սփռոց սեղանոյ, սօֆրա պէզի. Feuer-lösch-anstalt, տեղի պատրաստութեան ՚ի շիջուցանել զհուրդ. Geburts-tag, օր ծննդեան, դօղում կիւնիւ ։

Բաղադրեալն է՝ որ ՚ի սկիզբն յաւելմամբ մասնական ինչ փոփոխի, որպէս Geschenk, պարգև, ընծ-

շէյ. Verlust, կորուստ, ղայպ. յորս մասնիկքն Ge և Ver են բաղադրիչ մասնիկք ։

## Բ. ՏԵՍԱԿ ԳՈՅԱԿԱՆԱՑ

Գոյականաց կրկին են տեսակք, Նախատիպ և Ածանցական ։

Նախատիպ է՝ որ ոչ ածանցի յայլմէ բառէ, այլ պահէ զիւր բնիկ կազմութիւն, օր. Mann, այր, էր. Haus, տուն, էվ. Kopf, գլուխ, պաշ ։

Ածանցական է՝ որ 'ի նախատպաց ածանցի յաւելմամբ աննշան ինչ մասնկան 'ի վերջս. օր. Gärtner, պարտիզպան, պաղճէպան. Bauer, գիւղական, քէօյլիւ ։

Այս ածանցականաց բազում տեսակք են, այլ և այլ ածանցականակերտ մասնկամբ ածանցեալ. են՝ որ զնուազութիւն ինչ ցուցանելով Նուազականք կոչին, որպէս Töchterchen, փոքրիկ դուստր, դստրիկ, քըզճըղազ. Fräulein, փոքրիկ աղջիկ, քըզճըղազ, և այլն. և են որ զնշանակութիւն յինքեան 'ի վերացեալն ցուցանելով կոչին Վերացեալք. օր. Grösse, մեծութիւն, պիւյիւքլիւք. Schönheit, գեղեցկութիւն, կիւզէլլիք. և այլն ։ Զայսցանէ տես և 'ի Գլ. Ա. Յօդ. Գ ։

## Գ. ԹԻՒ ԳՈՅԱԿԱՆԱՑ

Թիւն է երկու, Եզական (Einheit, Einzahl, einfache Zahl, կամ Singular) որ նշանակէ զմի ինչ. օր. Baum, ծառ, աղաճ. և Յոգնական (Mehrheit, Mehrzahl, vielfache Zahl, կամ Plural) որ զբազումս միանգամայն յայտ առնէ. օր. Bäume, երկու կամ բազում ծառք, աղաճլար. և այլն ։

Յատուկ անուանք սովորաբար չունին յոգնական օր. Wien, Վիեննա, Պէչ. Iacob, Յակոբ, Եաքուպ. բայց եթէ համանունք բազումք իցեն, ունին և յոգնական. օր. Neudörfer sind zehn, Նորագիւղք են տասն, (որ գիւղօրէք անուամբս Նորագիւղ՝ են տասն թուով) ։

Որպէս առ մեզ, նոյնպէս և առ գերմանացիս

են բազում գոյական անուանք անյոդնականք. օր. Geblüt, արիւն, ղան. Geld, դրամ, ախչէ. Gesinde, ծառայք, հըզմէթքեարլար. Vieh, անասուն, հայվան. Sand, աւազ, գում. Wäsche, լուացք, չամաշըր:

Այլ բազումք ևս անեզականք. օր. Beinkleider, երկայն անդրավարտիք, ուզուն թօն. Hosen, վարտիք, թօն. Leute, մարդիկ, խալգ. Truppen, գունդ զօրաց, ասկէրլէր:

Անուանք՝ որք զնիւթ ինչ լոկ ցուցանեն՝ յեզականն միայն վարին, իսկ 'ի յոգնականն ոչ, օր. Holz, փայտ, օդուն. Schmalz, ճարպ հալեալ, սարը եաղ. Thon, կաւ, չամուր, քիլ. Fleisch, միս, էթ. Gold, ոսկի, ալթըն. զի յոգնականք սոցա փոխեն զնշանակութիւնն, օր. Holze, տեսակք փայտից, օդունլարըն ճինսի, Hölzer, կտորք փայտի, օդուն բարչալարը.

Յաճախական անուանք հասարակաբար յեզականն վարին, օր. Geheule, յաճախ ոռնալն, ուլը հավլամա. Geseufze, յաճախ հեծութիւն, ուլը ահ ու վահ:

Գոյականք նշանակողք չափուց և կշռոց եթէ ունիցին յառաջոյ իւրեանց զթուական անուանս, յոգնակի ոչ վարին. օր. fünf Stück Vieh, հինգ անասուն, պէշ պաշ հայվան. zehn Acker Feld, տասն արտավար գետին, օն կիւն սիւրիւլէճէք թարլա. acht Paar Tauben, ութ զոյգ աղաւնւոյ, սէքիզ չիֆթ կէօվէրճին:

Սորտաքոյ կանոնիս են բառքս Elle, կանգուն, արշըն. Woche, շաբաթ, հաֆթա. Ruthe, գան, չէօպիւկ. Unze, ունկի, սէքիզ տիրհէմ. Tag, օր, կիւն. Iahrhundert, դար, եիւզ եըլլըք վագթ. Monath, ամիս, այ. և այլ ևս սոցին նման բառք, որ զկնի թուական անուանն յեզականն և 'ի յոգնականն վարին անխտիր. օր. eine Länge von zehn Schritt, տասն քայլաչափ ոտք երկայնութի. ein Gewicht von sechs Pfund կամ Pfunden, Կշիռ ինչ վեց Փունտեան:

Վերացեալ անուանք վարին միայն յեզականն. նոյնպէս և նոքա որք զառաքինութի, զմոլութիւն, զկիրս և այլն, նշանակեն. օր. Liebe, սէր. Hass, ատելութիւն. Thätigkeit, ներգործական կարողութիւն. Trunkenheit, արբեցութի. Zorn, ցասումն. Furcht, երկիւղ. Rechtschaffenheit, համեստութի.

Tod, մահ. Leben, կեանք. և այլն: Սոյնպէս և աներևոյթք բայից չունին յօդնական. զր. das Stehen, կալն. das Wissen, գիտելն. և այլն:

## Դ. ՍԵՌ ԳՈՅԱԿԱՆԱՑ

Երրեակ սեռք են բառից առ գերմանացիս, Արական (männlich), Իգական (weiblich), և Չէզոք, (sachlich). Բայց գտն և գոյականք՝ որք և արական և իգական յօդիւ վարեալ՝ ասին Հասարակ (gemeinschaftlich), և են դարձեալ որք առնուն զամ յօդս ըստ ամ սեռի, և կոչին Ամենասեռք (allgeschlecht):

'Ի զանազանել զսեռս բառից, գիտել պարտ է նախ՝ թէ գերմանական իցէ բառն եթէ օտար. երկրորդ՝ պարզ իցէ թէ բաղադրեալ: Զի օտար բառք առեալք յայլոց ազգաց, առնուն զնոյնասեռ յօդս՝ որովք վարէին 'ի բնիկ լեզուի՝ յորմէ ածանցին. զր. das Kapital, գլուխ դրամոյ. der Phantast, երազայոյզ. die Sinagoge, ժողովրդանոց Հրէից. die Syntax, շարադրութիւն բառից, համաձայնութի. ևլն:

Յորոշել զսեռս պարզ բառից (զի բարդքն զվերջնոյ բառին զյօդն ունին և զսեռ), դիտել պարտ է զնշանակութիւս և զվերջաւորութիւնս նոցա:

Ըստ նշանակութեան արական են ամ անուանք և գործք արանց, անուանք հոգեղէն էակաց, հողմոց, եղանակաց տարւոյ, ամսոց և աւուրց. զր. Vater, հայր. Bruder, եղբայր. Sohn, որդի. Süd, հարաւ. West, արևմուտք. Sommer, ամառն. Ianuar, կամ Iänner, յունվար. Sonntag, կիրակէ. և այլն:

Իգական են ամ անուանք և գործք իգաց, զր. Mutter, մայր. Tochter, դուստր. Köchin, խոհակեր կին. և այլն:

Չէզոք են անուանք հրահալից, գաւառաց և տեղեաց, եւս և հաւաքական և յաճախական անուանք սկսեալք մասնդրաւս ge. զր. das Eisen, երկաթ. Deutschland, Գերմանիա. Pest, Բեշթէ քաղաքն Ունկարիոյ. Gefühl, շօշափողական զօրութի, զգացողութի. Geblüt, արիւն. Gewölk, ամպ. Gezänk, յաճախ կագ. և այլն:



Հասարակք են անորոշ բառք՝ որք ըստ ինքեան չունելով ինչ սեռ, լինին մերթ արական և մերթ իգական. օր. jemand, ոք. man, մասնիկ ինչ երրորդ դիմի. wer, ով. es, մասնիկ չէզոքականի. was, որ ինչ:

Իսկ ըստ վերջաւորութեն՝ արականք են յանգեալք 'ի el, er (նշանակիչք գործեաց), en, ing, և ling, օր. der Hebel, լծակ, բառնալիք, եիւք գալտըրաճագ ալաթ. Trichter, ձագար, խունի. Hammer, ուռն, չէքիճ. Laden, կրպակ, տիւքեան. Schlitten, սահնակ, գըզաք. Schilling, շիլլինկ՝ դրամն անգղիացւոց. Iüngling, երիտասարդ, տէլի գանլը. և այլն:

Իգականք են յանգեալքն 'ի inn, ei, heit, keit, schaft, ung, և այլն. ոպ. Freundinn, բարեկամուհի. Tändelei, կատակ, խաղալիկ. Freiheit, ազատութն. Munterkeit, զուարթութն. Freundschaft, բարեկամութն. Hofnung, յոյս. Grösse, մեծութն. և այլն:

Չէզոք են ամ նուազականք, աներևոյթք, եւս և յանգեալքն 'ի thum, ոպ. das Fräulein, օրիորդ. Söhnlein, որդեակ. Mädchen, աղջիկ. Essen, ուտելն. Bischthum, եպիսկոպոսութիւն. և այլն: Նոյն և բազում բառք յանգեալք 'ի niss, որպէս. Zeugniss, թուղթ վկայական. Bildniss, պատկեր. ևն:

Խոտորին 'ի կանոնացս ա. Գոյականք ինչ՝ որոց ըստ վերջաւորութեն պարտ էր լինել արական, բայց են իգական կամ չէզոք. ոպ. die Klapper, բոժոժ, չընկըրագ. die Leiter, սանդուխք կրելի, էլ մէրտիվէնի. das Messer, դանակ, պըչագ. das Becken, կոնք, լէյէն. das Zeichen, նշան, նիշան. և այլն:

Բ. Ոչքա որք ըստ նշանակութե իւրեանց իգական են, և լինին չէզոք. ոպ. das Weib, կին, ավրաթ. das Mensch, (անարգական անուն իգական անձանց) կին, աղջիկ, գօնթալ. das Mädchen, աղջիկ. և այլն:

Գ. Այն և բառք՝ որոց ըստ նշանակութեն պարտ էր լինել չէզոք, և են արական կամ իգական. ոպ, der Tomback, բաղադրեալ հրահելլի ինչ, թօմպաք. der Zink, զինկ, թութիա. der Sthal, պողպատ, չէլիք. der Reichthum, հարստութիւն, զէնկինլիք. die

Mark, վիճակ (երկիր), նահիէ. die Türkei, տաճ-կաստան. և այլն:

դ. Բարդ բառք, որպէս ասացաք, զվերջնոյ բա-ռին ունին զսեռ և զյօդ. բայց խոտորին 'ի սովորա-կան կանոնէս յանդեալքս 'ի muth, ոպ die Demuth, խոնարհութիւն, ալչագ կէօնիւլլիւլիւք. die Grossmuth, մեծահոգիութիւն, կէօնիւլ պէօյիւքլիւյիւ. die Anmuth, հաճութի, խօշլուգ. die Schwermuth, սևամաղձութիւն. գարա սէվտալըլըք. die Sanftmuth, հեզութիւն. և այլն: Այնպէս և բառքս die Antwort, պատասխանի, ճէ-վապ. der Abscheu, զզուանք, իքրահ. das Tagelohn, վարձք աւուր միոյ, կիւնտէլիք. das Macherlohn, վարձք շինելոյ, ուսթաէիյէ, էմէքմա. die Mittwoche, der Mitt-woch, չորեքշաբաթի. և այլն:

ե. Այն և այլազգական բառք՝ որք ոչ զգենին լե-զուին իւրեանց զսեռս պահեն, այլ փոխին յայլ. ոպ. der Punkt, կէտ, նօքթա. der Tempel, տաճար, իպատէթխանէ. der Körper, մարմին, պէտէն. die Kanzel, ամբիոն, մինպէր. die Narcisse, նարգէս ծաղիկն, նէր-կիզ. das Echo, արձագանք, սէս, եանգը. das Fieber, ջերմն, սըթմա. das Labyrinth, լաբիւրինթոս, կէրտապ; das Pulver, փոշի, թօզ. և այլն:

Այն և բազում գոյականք, որք ըստ սեռիցն չմար-թեն փակիլ ընդ կանոնաւ իւիք. որպէս սկսեալքն մասնկաւս ge (եթէ չիցեն հաւաքականք) և յան-գեալքն 'ի niss, յորոց ոմանք արականք են, այլք իգականք և այլք չեզոք, ոպ. der Gedanke, միտք, ֆիքր. der Gehorsam, հնազանդութիւն, մուտիլիք. die Gewalt, կարողութիւն. die Gestalt, ձև. der Ge-halt, ռոճիկ, այլըք, եըլլըք. die Erlaubniss, հրաման, թոյլտուութիւն, իզն. das Bildniss, պատկեր, սուրէթ. և այլն:

Այն և գոյականք որք ըստ այլևայլ նշանակութե՛ այլասեռ յօդից են ընդունակ. զորս յընտիր բա-ռարանաց և 'ի հմուտ մատենագրաց պարտ է մեզ ուսանել. զի մերթ արական են մերթ իգական և մերթ չեզոք, յորոց զդժուարագոյնսն դիցուք աստ:

| | |
|---|---|
| der Band, կողք գրոց, հատոր, ճիլտ. | das Band, ժապաւէն, շէրիտ. |
| der Bund, կապ, պաղ. | das Bund, խուրձ, տէմէթ. |
| der Erbe, ժառանգ, վարիս. | das Erbe, ժառանգութիւն, միրաս. |
| der Mensch, մարդ, ինսան. | das Mensch, աղջիկ, կին (անարգ) գօնթաւ. |
| der Reis, որիզ, բիրինճ. | das Reis, ընձիւղ, ֆիտան. |
| der Schild, վահան, գալգան. | das Schild, նշան (տանց ևն), նիշան. |
| der Thor, յիմար, տէլի. | das Thor, դուռն (մեծ). |
| der Verdienst, շահ, ֆայտա. | das Verdienst, արժանաւորութիւն, լեաքէւէ. |
| der Buckel, սապատ ողին, գամ-պուր. | die Buckel, պալար, գապարճըգ. |
| der Heide, հեթանոս, բութբէ-րէսթ. | die Heide, դաշտ անարօրադիր, էքինսիզ օվա. |
| der Leiter, առաջնորդ, գըլաւուզ. | die Leiter, սանդուխք, մէրտիվէն. |
| der Mast, կայմն նաւու, տիրէկ. | die Mast, ճարակ, պէսի. |
| der See, լիճ, կէօլ. | die See, ծով, տէնիզ. |
| die Mark, կշիռ 88 դրամաց. | das Mark, ուղեղ ծառոց, աղաճ էօզիւ։ |

## Ե. ՀՈԼՈՎՔ ԵՒ ՀՈԼՈՎՄՈՒՆՔ ԳՈՅԱԿԱՆԱՑ

Հոլովն է պէսպէս փոփոխումն մի և նոյն գոյականի, ըստ զանազան հանգամանաց բառից, 'ի նշանակել զթիւ և զհամեմատութիւն նոցա։ Թիւն է եզական և յոգնական. և եզականին փոփոխումն 'ի յոգնականն լինի նախ՝ փոխմամբ փոփոխական ձայնաւորին, որպ. Tochter, դուստր. Töchter, դստերք. Vater, հայր. Väter, հարք. և այլն։ Երկրորդ՝ յաւելուլ 'ի վերջս եզակի ուղղական բառից զհետևեալ տառքս կամ զմասնիկքս e, er, en, n, որպ, Abend, երեկոյ. Abende, երեկոյք. Kind, զաւակ. Kinder, զաւակք. Fürst, պայազատ. Fürsten, պայազատք. Stachel, խայթոց. Stacheln, խայթոցք։ Երրորդ՝ երկուքումբքն միանգամայն, այս է և փոփոխմամբ ձայնաւորացն և յաւելմամբ տառիցն. որպ. Bauch, որովայն. Bäuche, որովայնք. Bad, լոգարան, բաղանիք. Bäder, լոգարանք, բաղանիք. Tuch, չուխայ. Tücher, չուխայք. և այլն։ Չորրորդ՝ եզականք բազումք մնան անփոփոխ 'ի յոգնականն, որպ. Schemel, աթոռակ կամ աթոռակք. Adler, արծուի, կամ արծուիք. Riegel, նիգ կամ նիգք. և այլն։

Այն և բառք՝ որոց յոգնականն վրիպակաւ յանգի 'ի s, ոպ. Mädchens, աղջկունք. և այլն ։

Հոլովք կազմին յարելով յուղղականն եզականին զհոլովակերտ գիրս. որ. 'ի բառէս Mann, այր, լինի սեռական Mannes, և 'ի բառէս Knabe, մանուկ, Knaben, և այլն ։

Բազում անգամ և յայլ հոլովս ուղղականն պահի անփոփոխ. ոպ. ուղ. Frau, կին, տիկին. սեռ. Frau, տրակ. Frau, և այլն ։ Յորս յօդն միայն փոփոխի. ոպ. ուղ. die Frau, սեռ. der Frau, և այլն. ուղ. diese Magd, աղջիկս այս, սեռ. dieser Magd, և այլն ։

Եթէ ածականք ունիցին զտեղի գոյականի, յօդն գոյականին դնի 'ի վերայ նոցա, և հոլովին. որ. ուղ. der Weise, իմաստուն ոք. սեռ. des Weisen, տր. dem Weisen, և այլն ։ Իսկ եթէ փոխանակ գոյականին իցեն այլ մասունք բանի, նոքա մնան անհոլով. ոպ. jede Sache hat ein Aber, ամենայն ինչ ունի զբայց, հէր շէյին ամմասը վար ։

'Ի հասարակ անուանս են որ բնիկ ազգայինքն են, և են որ եկամուտք յօտարաց ։ Ազգայինք ունին զհոլով կատարեալ և անկատար, կանոնաւոր և անկանոն ։ Այն և բառք անհոլով կոչեցեալք, որ չհոլովին երբէք ։ Այլ են ևս, որ ընդ այլևայլ հոլովմամբ անկանին ։ Բառք օտարք եկամուտք 'ի Լատինաց, 'ի Յունաց և 'ի գաղղիացւոց, չեն պարփակեալ ընդ կանոնաւ իւիք. վասն որոյ զհետ գերմանականացն յաւելցուք և օրինակս ինչ վասն նոցա ։ Գերմանական բառից այլևայլ հոլովմունք են, ըստ այլևայլ օրինակաւ յանգելոյ նոցա 'ի սեռականն, կամ փոփոխելոյ 'ի յոգնականն ։ Ատելունկ դնէ ութ հոլովմունս գերմանական լեզուի, զորոց զվերջաւորութիւնս միայն դիցուք աստ՝ ըստ չորից հոլովոց ևեթ ։

## Եզական.

| | 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ուղ. | — | — | — | —e. | —e. | — | — | — |
| Սեռ. | es, s. | es, s. | s. | en, n. | ens, ns. | es, s. | — | — |
| Տր. | e. | e. | — | en, n. | en, n. | e. | — | — |
| Հայց. | — | — | — | en, n. | en, n. | — | — | — |

## Յոգնական.

| | 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ուղ. | e. | er. | — | en, n. | en, n. | en, n. | en, n. | e. |
| Սեռ. | en. | er. | — | en, n. | en, n. | en, n. | en, n. | e. |
| Տր. | e. | ern. | n. | en, n. | en, n. | en, n. | en, n. | en. |
| Հայց. | e. | er. | — | en, n. | en, n. | en, n. | en, n. | e. |

Այսու աղիւսակաւ ուսուցանեն մինչև ցայժմ 'ի բազում տեղիս Գերմանիոյ զհամբակս. բայց արդի քերականք տեսեալ զդժուարութիւն ուսանելոյ զութ հոլովմունս՝ նուազեցուցին զնոսա 'ի չորս, յերիս և մինչև յերկու հոլովմունս, որ ևս դժուարագոյն լինի ուսանողաց 'ի զանազանել զվերջաւորութիւնս, և յուսանել կատարելապէս զլեզուն: Արդ աղագաւ և մեր հետևելով հին քերականաց, որ առաւել գործածականքն են և ծանօթք ամենեցուն, դնեմք ութ օրինակս հոլովմանց. որոց վեց առաջինքն՝ արականք են և չէզոք, և երկու վերջինքն՝ իգականք:

### ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԻՆՉ 'Ի ՎԵՐԱՅ ՀՈԼՈՎՄԱՆՑ

ա. Գոյականք յանգեալք 'ի en կամ n, յամ հոլովս յոգնականին մնան անփոփոխ. ոպ. յոգն. ուղ. die Tauben, աղաւնիք. սեռ. der Tauben, տր. den Taubeu, հայց. die Tauben, և այլն:

բ. Յանգեալքն 'ի e, l, և r, առնուն 'ի տրականին n, ինչ. ոպ. յոգն. ուղ. die Thiere, անասունք, տր. den Thieren; յոգն. ուղ. die Engel, հրեշտակք. տր. den Engelu; յոգն. ուղ. die Brüder, եղբարք. տր. den Brüdern, և այլն:

գ. 'Ի չէզոքս՝ եզակի հայցականն նոյն մնայ ընդ ուղղականին. ոպ. das Haus, տուն կամ զտուն, և

այլն ։ Նոյնպէս և 'ի յոգնականն . ուղ . die Füchse, աղուէսք կամ զաղուէսս . die Blumen, ծաղիկք կամ զծաղիկս . die Kinder, զաւակք կամ զզաւակս , ևն ։

Դ . Իգականք յեզականն հոլովին անփոփոխ , զր . ուղ . die Frau, տիկին , կին , սեռ . der Frau, տր . der Frau, հայց . die Frau, և այլն ։

Ե . Արականք յանգեալք 'ի el, en, er, 'ի յոգնականի ուղղականն մի և նոյն մնան ընդ եզակի ուղղականին . որպէս , der Engel, հրեշտակ . die Engel, հրեշտակք . der Kerl, այր , հէրիֆ . die Kerl, արք ( և ոչ die Kerles կամ Kerle ) . der Degen, սուր . die Degen, սուրք . das Mädchen, աղջիկ . die Mädchen, աղջկունք ( և ոչ Mädchens ) . der Wagen, սայլ , արաբա . die Wägen, սայլք , արաբալար ( և ոչ Wagens ) . das Fenster, պատուհան . die Fenster, պատուհանք . der Kaiser, կայսր , die Kaiser, կայսերք . der Betrüger, խաբեբայ . die Betrüger, խաբեբայք . և այլն ։

Զ . Արականք յեզակի սեռականն յանգեալք 'ի es, 'ի տրականն յանգին 'ի e, զր . եզ . սեռ . des Buches, մատենի . տր . dem Buche, 'ի մատեան . սեռ . des Hauses, տան . dem Hause, 'ի տուն . և այլն ։ Բայց եթէ 'ի s լոկ յանգիցին , յայնժամ մնան որպէս ուղղականն . զր . ուղ . der Spiegel, հայելի . սեռ . des Spiegels, տր . dem Spiegel; ուղ . der Vater, հայր . սեռ . des Vaters, տր . dem Vater, ևն ։

Է . Յոգնականն երկրորդ և ութերորդ օրինակին՝ ունի միշտ զփոփոխական ձայնաւորն , (բաց 'ի բառէս Leinwand, կտաւ , որ անփոփոխ է) բայց եթէ չունիցի զփոփոխականն՝ յոգնականն յանգի 'ի en կամ n ։ Յոգնականն առաջին և երրորդ օրինակի, մերթ ունի զփոփոխական ձայնաւորն և մերթ ոչ ։

## ՕՐԻՆԱԿ Ա .

| Եզական . | | | Յոգնական . | |
|---|---|---|---|---|
| Ո . der Baum, | ծառ , | աղաճ . | die Bäume, | ծառք , աղաճլար . |
| Ս . des Baumes, | ծառոյ , | աղաճըն . | der Bäume, | ծա[illegible]ըն . |
| Տ . dem Baume, | 'ի ծառ , | աղաճա . | den Bäumen, | 'ի [illegible] |
| Հ . den Baum, | զծառ , | աղաճը . | die Bäume, | [illegible] |

## ՕՐԻՆԱԿ Դ.

### Եզակի.

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | der Löwe, | առիւծ, | ասլան. |
| Ս. | des Löwen, | առիւծու, | ասլանըն. |
| Տ. | dem Löwen, | յառիւծ, | ասլանա. |
| Հ. | den Löwen, | զառիւծ, | ասլանը. |

### Յոգնակի.

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | die Löwen, | առիւծք, | ասլանլար. |
| Ս. | der Löwen, | առիւծուց, | ասլանլարըն. |
| Տ. | den Löwen, | յառիւծս, | ասլանլարա. |
| Հ. | die Löwen, | զառիւծս, | ասլանլարը։ |

Ըստ այսմ հոլովին բազում արականք, օր. der Bär, արջ. der Bube, տղայ. der Erbe, ժառանգ. der Hase, նապաստակ. der Ochs, եզն. der Held, դիւցազն. der Herr, տէր. der Mensch, մարդ. der Mohr, մաւրիտանացի. և այլն։

Յանգեալքն 'ի e, 'ի սեռականն առնուն լոկ զn, իսկ բառք յանգեալք 'ի բաղաձայն ինչ, առնուն զen.

Բառք՝ որք անկանին ընդ այսու հոլովմամբ՝ չունին փոփոխական ձայնաւորս։ Ոմանք աղաւաղելով դնեն զհայցականն որպէս զուղղական, որ փոխանակ ասելոյ den Helden, զդիւցազն, ասեն den Held.

## ՕՐԻՆԱԿ Ե.

| Եզակի. | | | | Յոգնակի. | |
|---|---|---|---|---|---|
| Ո. | der Gedanke (en), | միտք, | ֆիքր. | die Gedanken, | ֆիքիրլէր. |
| Ս. | des Gedankens, | մտաց, | ֆիքրին. | der Gedanken, | ֆիքիրլէրին. |
| Տ. | dem Gedanken, | 'ի միտս, | ֆիքրէ. | den Gedanken, | ֆիքիրլէրէ. |
| Հ. | den Gedanken, | զմիտս, | ֆիքրի. | die Gedanken, | ֆիքիրլէրի։ |

Այսպէս հոլովին ոմ արականք՝ որոց կրկին են ուղղականք՝ մերթ 'ի e և մերթ 'ի en յանգեալ. օր. Friede կամ Frieden, հաշտութիւն. Name, en, անուն. Funke, en, կայծ. Wille, en, կամք. և այլն։ Բառն Herz, սիրտ, լինի 'ի սեռականն Herzens, սրտի, այլ եղակի հայցականն ոչ լինի das Herzen, այլ das Herz.

Այնպէս և բառս Buchstab, գիր, տառ. տես ընդ յաջորդ օրինակաւ:

Բառք որ ընդ հոլովմամբս՝ չունին փոփոխական տառս:

## ՕՐԻՆԱԿ Դ.

Եզակի.

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | der Strahl, | ճաճանչ, | շուլէ. |
| Ս. | des Strahles, | ճաճանչի, | շուլէնին. |
| Տ. | dem Strahle, | 'ի ճաճանչ, | շուլէյէ. |
| Հ. | den Strahl, | զճաճանչ, | շուլէյի. |

Յոգնակի.

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | die Strahlen, | ճաճանչք, | շուլէլէր. |
| Ս. | der Strahlen, | ճաճանչից, | շուլէլէրին. |
| Տ. | den Strahlen, | 'ի ճաճանչս, | շուլէլէրէ. |
| Հ. | die Strahlen, | զճաճանչս, | շուլէլէրի: |

Ընդ այսու հոլովմամբ անկանին das Bett, անկողին. der Dorn, փուշ. der Halm, ծղօտ. das Hemd, շապիկ. das Ohr, ականջ. der See, լիճ. ( սեռ. des Sees ); Sporn, խթան, Staat, տէրութիւն, և այլն:

Նաև են այլազգական բառք. որ, der Affect, յօժարութիւն. der Diamant, անդամանդ. der Patron, պաշտպան. das Kapital, ( յոգն. Kapitalien ) գլուխ դրամոյ. և այլն:

Հետևեալ բառք 'ի յոգնականին առնուն միայն զn առանց eի, որ. der Bauer, յոգ. ern, գիւղական. der Gevatter, ern, կնքահայր. der Nachbar, arn, դրացի. der Stachel, eln, խայթոց. der Stiefel, feln, կօշիկ. der Vetter, ern, հօր կամ մօր եղբայր. հօր կամ մօր եղբօրորդի, ազգական. և այլն:

Լատինական բառք՝ 'ի սեռականին եզականի առնուն միայն s, իսկ 'ի յոգնականին առնուն զen, որ. Doctor, սեռ. ors, յոգ. en, բժիշկ, փաստաբան. Autor, ors, en, հեղինակ. Professor, ors, en, դաստատու. Pastor, ors, en, հովիւ. Rector, ors, en, վերակացու. և այլն: Իսկ բառս der Buchstab, կամ Buchstabe, en, գիր, տառ, վասն զանազանութեան վերջաւորութեան

հոլովի ըստ Է և Զ հոլովմանց ։ Որ ընդ հոլովմամբս են բառք՝ չունին փոփոխական ձայնաւորս ։

## ՕՐԻՆԱԿ Է.

| | Եզակի. | | | Յոգնակի. | |
|---|---|---|---|---|---|
| Ո. | die Zahl, | թիւ, սայը. | | die Zahlen, | թիւք, սայըլար. |
| Ս. | der Zahl, | թուոյ, սայընըն. | | der Zahlen, | թուոց, սայըլարըն. |
| Տ. | der Zahl, | 'ի թիւ, սայըյա. | | den Zahlen, | 'ի թիւս, սայըլարա. |
| Հ. | die Zahl, | զթիւ, սայըյը. | | die Zahlen, | զթիւս, սայըլարը ։ |

Այս պէս հոլովին իգականք . որ . die Gegend, կողմն . Welle, ալիք ծովու . Person, անձն . Antwort, պատասխանի . Bahn, շաւիղ, ճանապարհ . Iagd, որս . եւն ։ Այս մանաւանդ բառք յանգեալք 'ի heit, ei, inn, keit, schaft, ung, և e .

Հետեւեալ բառք 'ի յոգնականն առնուն միայն զn, առանց eի . որ . die Ader, յոգ . Adern, երակ . Fackel, ջահ . Mandel, նուշ . Leber, լեարդ . Achsel, ուս, թիկունք . և այլն ։ Նոյնպէս և այլազգական բառք . որ . die Harmonie, nien, ներդաշնակութիւն . Armee, meen, բանակ զօրաց . Allee, leen, ճանապարհ ( ծառատունկ ) . Akademie, mien, ճեմարան, ուսումնարան . և այլն ։

Իսկ բառքս Mutter, մայր, և Tochter, դուստր, 'ի յոգնականն լինին Mütter, և Töchter .

## ՕՐԻՆԱԿ Ը.

| | Եզակի. | | | Յոգնակի. | |
|---|---|---|---|---|---|
| Ո. | die Magd, | աղջիկ, գըզ. | | die Mägde, | աղջկունք, գըզլար. |
| Ս. | der Magd, | աղջկան, գըզըն. | | der Mägde, | աղջկանց, գըզլարըն. |
| Տ. | der Magd, | յաղջիկ, գըզա. | | den Mägden, | յաղջկունս, գըզլարա. |
| Հ. | die Magd, | զաղջիկ, գըզը. | | die Mägde, | զաղջկունս, գըզլարը ։ |

Ընդ սմին անկանին բազում արմատականք՝ բայց իգական բառք . որպէս die Bank, նստարան . Brust, կուրծք . Hand, ձեռն . Wand, որմն . Gans, սագ . Schnur, լար, ժապաւէն, գայթան . Maus, մուկն . Nuss,

ընգոյզ· Braut, հարսն· Faust, բուռն ձեռաց· Frucht, պտուղ· Gruft, այր, գերեզման· Haut, մաշկ· Kluft, պատառուած (վիմաց կամ լերանց)· Lust, զուարճութիւն· Macht, զօրութիւն· Nacht, գիշեր· Stadt, քաղաք, շէհէր· և այլն։ Նոյնպէս և բառք յանգեալք 'ի st, ft, զր· Wurst, երշիկ սուճուխ· Ankunft, հասանելն· և այլն։

Որ ընդ այսու հոլովմամբ անկանին բառք՝ ամենեքին ունին զփոփոխական ձայնաւորն։ Են և գոյականք՝ որք 'ի յոգնականն ընդ զանազան հոլովմամբ անկեալ, ունին այլևայլ նշանակութիւնս՝ որք և 'ի փոփոխմանէ ձայնաւորացն որոշին, զր·

| Եզակի· | Յոգնակի, | |
|---|---|---|
| der, das Band, | Bände, | կազմք գրոց, ճիլտ· |
| | Bande, | կապանք, պաղլար· |
| | Bänder, | ժապաւէնք, շէրիթլէր· |
| die Bank, | Bänke, | նստարանք, իսքէմլէլէր· |
| | Banken, | դրամատեղի. խաղացողաց· թէզկէահ· |
| das Ding, | Dinge, | գործք, իշլէր· |
| | Dinger, | իրք, շէյլէր· |
| das Gesicht, | Gesichte, | տեսիլք, հայալլէր· |
| | Gesichter, | երեսք, չէհրէլէր· |
| das Land, | Lande, | կողմանք, թարաֆլար· |
| | Länder, | գաւառք, նահիէլէր· |
| der Leiter, | Leiter, | առաջնորդք, գըլաւուզլար· |
| die Leiter, | Leitern, | սանդուխք, մէրտիվէնլէր· |
| der Mensch, | Menschen, | մարդիկ, ինսանլար· |
| das Mensch, | Menscher, | անարգ կանայք կմ աղջկունք, քօռթալլար· |
| der Ort, | Orte, | տեղիք· |
| | Oerter, | (որոշեալ ինչ) տեղիք, կողմանք· |
| der Schild, | Schilde, | վահանք, գալգանլար· |
| das Schild, | Schilder, | նշանք, նիշանլար· |
| das Tuch, | Tuche, | ազգ չուխայից· |
| | Tücher, | կտաւիք, կերպասք, ասուիք· |
| das Wort, | Worte, | բանք, քէլամլար· |
| | Wörter, | բառք, լուղաթլէր· ևն։ |

## ԲԱՌՔ ՊԱԿԱՍԱՒՈՐՔ 'Ի ՀՈԼՈՎՍ

Acht. զր. Acht geben, փոյթ ունել, կէօզէթմէք։
Angst. in Aengsten seyn, լինել յանձկութեան· սը-գըշտա օլմագ։

Bedacht. mit Bedacht handeln, ուշադիր ըննել. դէտ֊
ման ընել :

Betracht. in allem Betracht, ամ̃ ակնածութե̃ :

Braus und Saus. in Saus und Braus leben, կեալ
շուայտութե̃ :

Falsch. ohne Falsch, միամիտ, անկեղծ :

Fug. mit Fug und Recht, իրաւամբք :

Lebzeit. bei meinen Lebzeiten, ՚ի կեանս իմ, յա֊
ւուրս կենաց իմոց :

Noth. in Nöthen seyn, ըլնել ՚ի կարօտութե̃ :

Schwang. im Schwange seyn, ըլնել ՚ի տատանմանս :

Statt. an meiner Statt, ՚ի տեղի իմ. և այլն :

Անկանոն են բառքս Jemand, ոք, պիրիսի. և Niemand, ոչ ոք, հիչ պիրիսի. և հոլովին յեզականն միայն այսպէս.

| Եզական. | | Եզական. | |
|---|---|---|---|
| Ո. Jemand, | ոք, պիրիսի. | Niemand, | ոչ ոք, հիչ քիմսէ. |
| Ս. Jemands, | ուրուք, պիրիսինին. | Niemands, | ոչ ուրուք, հիչ քիմսէնին. |
| Տ. Jemanden, Jemand, | ումեք, պիրիսինէ. | Niemanden, Niemand, | ոչ ումեք, հիչ քիմսէյէ. |
| Հ. Jemanden, Jemand, | զոք, պիրիսինի. | Niemanden, Niemand, | ոչ զոք, հիչ քիմսէյի. |

Անհոլով են և Etwas, իմն, ինչ. Man, մասնիկ ինչ երրորդ դիմի. Nichts, ոչ ինչ. Es մասնիկ երրորդ դիմի կամ դիմազուրկ բայից. այն :

Ընդ այսոսիկ մարթ է կարգել և զկապեալս ինչ ոճս ատացուածոյ առանց հոլովից և յօդի. որ̃.

mit Fleiss gemacht, դիտմամբ կամ խորհրդով ա֊
րարեալ :

mit Blut bespritzt, արեամբ սրսկեալ :

mit Weib und Kind, կանամբք և որդւովք :

von Haus zu Haus, տուն ՚ի տանէ :

Որպէս և գոյականք նշանակիչք թուոց չափուց և կշռոց անփոփոխ մնան. որ̃. fünf Stück Vieh, հինգ անասուն. պէշ հայվան. zehn Pfund Fleisch, տասն ֆունտ միս. sechs Fuss lang, վեց ոտնաչափ. եր̃ :

Նաեւ առեալ 'ի գաղղիականէն՝ կրկին եղանակաւ հոլովին: Եթէ արտասանեսցի իբրեւ զբառ գերմանական՝ անկանի ընդ միով 'ի վերոգրեալ հոլովմանցդ, զր. der Accord, դաշն, աքքօրդ: սեռ. des Accordes; յոգն, ուղ. die Accorde. Այսպէս եւ der Credit, կարծիք հաւատութե, քրէդիդ. das Concert, ներդաշնակութի, քօնցէրդ. das Porträt, կենդանագիր, փօրթրէդ. das Parlament, ծերակոյտ, փարլաման, փարլամէնդ. die Garnison, պարսպապահ զօրք, կառնիզօն. der Cadett, ազատորդի զինուորեալ յուսումն պատերազմական արուեստին. das Kabinett, սենեակ ներքին. das Billet, տոմսակ, պիլլէդ. der Bankerott, սնանկ, պանքէրօդ. եւ այլն:

Նոյց իգականք յանգեալք 'ի e առնուն 'ի յոգնականն զn, որպէս. die Adresse, հասցէ նամակի. թուղթ յայտարար անուան՝ մականուան եւ բնակութե ուրուք. յոգն. die Adressen; die Bouteille, շիշ, պուդէյլ. յոգ. Bouteillen; die Chikane (շիքանէ), խաբէական ձեռնարկութի. յոգ. Chikanen, եւ այլն:

Իսկ եթէ կայցէ մնասցէ բառն ըստ արտասանութե եւ ըստ յարմարագրութե գաղղիականին, արականն եւ իգականն առնուն յեզակի սեռականն զs; երբեմն եւ 'ի յոգնականն. զր. der Canton, սեռ. Cantons, կողմն, սահման. der Balcon, սեռ. Balcons, պատշգամբ, պալքօն. das Comptoir, սեռ. Comptoirs, սենեակ վաճառականաց, օդա, քօնդուար. եւ այլն:

Յանգեալքն 'ի ier, our, oir, եւ eur, հոլովին ընդ Գ հոլովմամբ: Նա եւ եթէ արտասանեսցին որպէս զգերմանական բառս՝ 'ի յոգնակի ուղղականն առնուն զe, եւ 'ի տրականն զen. զր. ուղ. der Officier, պաշտօնատար զօրաց. սեռ. des Officieres; յոգն. ուղ. die Officiere, տր. den Officieren, եւ այլն: Եթէ արտասանեսցին ըստ գաղղիականին, առնուն յեզակի սեռականն եւ յոգնակի ուղղականն s, զր. ուղ. der Tresorier, գանձապետ, սեռ. des Tresoriers; յոգն. ուղ. die Tresoriers; der Gouverneur, (կուվէրնէօր) քաղաքապետ. Gouverneurs, եւ այլն:

Բառք՝ որք են 'ի Յունաց և 'ի Լատինաց՝ երրակի հոլովին։

ա. Որպէս զԼատինացն, զր. ուղղ. das Adverbium, մակբայ. սեռ. des Adverbii, տր. dem Adverbio, յոգն. ուղղ. die Adverbia, սեռ. der Adverbiorum, և այլն։

բ. Երբեմն ըստ Թուոյն միայն փոփոխեալ 'ի յոգնականն, յայլ հոլովսն յօդքն միայն հոլովին. զր. եզ. ուղղ. das Verbum, բան, բայ, սեռ. des Verbum, և այլն. յոգն. յուղղ. die Verba, սեռ. der Verba, եւն։

գ. Հոլովին որպէս զգերմանական բառս, զր. ուղղ. der Inspector, վերակացու, սեռ. des Inspectors, յոգն. ուղղ. die Inspectoren. և այլն։

Բազում բառք այլազգականք՝ չունելով յեզականն զգերմանական վերջաւորութ, առնուն զայն 'ի յոգնականն. զր die Testimonien, վկայք. die Studien, ուսմունք եւն։

Իսկ որ յայլ ինչ լեզուաց և ոչ 'ի վերայ գրելոցն իցեն եկամուտ բառք, կամ հոլովին որպէս զգերմանականս և կամ մնան անհոլով։ Առաջինն լինի եթէ բառն ունիցի զգերմանական վերջաւորութիւն. զր. der Czar, Թագաւոր Ռուսաց. der Ianitschar, զինուոր տաճկաց, եէնիչէրի. die Karavane, կարաւան, քէրվան. եւն։ Իսկ եթէ ոչ՝ հոլովին միայն յօդք, զր. adagio, յամր, աղըր. allegro, զուարթ, եէյնիլ. (վարին միայն յերգս). որք 'ի յոգնականն առնուն զs միայն, զր die Adagios, եւն։

## ՀՈԼՈՎՄՈՒՆՔ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ

Յատուկ անուանք գաւառաց՝ տեղեաց՝ գետոց՝ լերանց և անձանց հոլովին երրակի։ ա. Յօդիւն միայն հոլովմամբ առանց փոփոխման անուանն, զր. ուղղ. der Salomo, Սողոմոն, Սիւլէյման. սեռ. des Salomo, տր. dem Salomo, հայց. den Salomo.

Յազնուական զրոյցս, և կամ եթէ զհամբաւելոյ ումեք իցեն բանքն՝ յուղղական հոլովն ոչ դնի յօդն. բայց յընտանեկան և 'ի հասարակ խօսս միշտ մնայ. զր. der Iacob soll her kommen, Յակոբն եկեսցէ աստ։

Յանուանս ազգաց՝ գետոց և լերանց պարտ է միշտ դնել զյօդն. օր. die Engländer, անգղիացիք, das Ufer der Donau, ափն Դանուբի. եւն ։

Է. Առանց յօդի փոփոխմամբ վերջաւորութեան անուանն ըստ լատինական հոլովման ։ Որպէս հոլովին գրեթէ ամ յատուկ անուանք, թէ լատինականք և թէ յունականք. օր. die Geburt Christi, ծնունդ Քրիստոսի. der Reichthum Crösi, հարստութիւն Կրեսոսի, եւն. յորում բառս, Christi և Crösi, են սեռականք ըստ լատին հոլովման բառիցս Christus և Crösus.

Գ. Գերմանական հոլովմամբ. զի ամ յատուկ անուանք գերմանականք, որք ոչ ըստ լատինական վերջաւորութէ յանգին, և և ամ լատինականքն և յունականք՝ յապաւեալք ՚ի բնիկ վերջաւորութեանց us, ius, կամ os, eos, որ ստէպ պատահէ. զի, օրինակ իմն, Ovidius, Ովիդիոս, Aesopus, Եսովպոս, Socrates, Սոկրատ, Aristoteles, Արիստոտէլ, յաճախ ևս վարին կրճատմամբ Ovid, Aesop, Socrat, Aristotel. Իսկ վերջապէս ամ այլազգական անուանք՝ որք ոչ յանգին ՚ի s, հոլովին գերմանական հոլովմամբ ։

## ՕՐԻՆԱԿ Ա.

| Եզակի. | Յոգնակի. |
|---|---|
| Ո. Wolf, մականուն իմն. | die Wolfe. |
| Ս. Wolfs. | der Wolfe. |
| Տ. Wolfen. | den Wolfen. |
| Հ. Wolfen. | die Wolfe. |

Որպէս հոլովին ամ ազգային և այլազգական յատուկ անուանք արանց և կանանց ։ Որպէս և յանգեալքն ՚ի mann, (որոց յոգնականն լինի manne և ոչ männer) օր. եզ. Fuchs, մականուն իմն. յոգն. die Fuchse, (և ոչ Füchse աղուեսք). եզ. Herrmann, մականուն և անուն. յոգն. die Herrmanne, եւն ։ Այլ յանգեալքն ՚ի s, sch, z, el, al, en, er, ar, և or, չանկանին ընդ այսու հոլովմամբ ։

ՕՐԻՆԱԿ Բ.

| Եզակի. | Յոգնակի. |
|---|---|
| Ո. Peter, Պետրոս. | die Peter. |
| Ս. Peters. | der Peter. |
| Տ. Petern. | den Petern. |
| Հ. Petern. | die Peter. |

Այսպէս հոլովի և Alexander, Աղեքսանդր. Daniel, Դանիէլ. Melchior, Մելքոն. ևն։

ՕՐԻՆԱԿ Գ.

| Եզակի. | Յոգնակի. |
|---|---|
| Ո. Leibnitz, մականուն ինչ. | die Leibnitze. |
| Ս. Leibnitzens. | der Leibnitze. |
| Տ. Leibnitzen. | den Leibnitzen. |
| Հ. Leibnitzen. | die Leibnitze. |

Իգականս՝ յոգնակի ուղղականն լինի die Annen, Աննայք, սեռ. der Annen, տր. den Annen, ևն։ Այս հոլով վերածին ամ յատուկ անուանք՝ ազգայինք և օտարք՝ յանգեալք 'ի s, sch, z, e; և քանի մի լատինականք յանգեալք 'ի ius; ևս և իգականք յանգեալք 'ի a. որպ. Asia, Ասիա. Europa, Եւրոպա. ևն։

ՕՐԻՆԱԿ Դ.

| Եզակի. | Յոգնակի. |
|---|---|
| Ո. Solon, Սողոն. | die Solone. |
| Ս. Solons. | der Solone. |
| Տ. Solon. | den Solonen. |
| Հ. Solon. | die Solone. |

Այսպէս հոլովին անուանք քաղաքաց և գաւառաց՝ որք ոչ յանգին 'ի s, sch, և z; ևս և անուանք անձանց՝ յանգեալք 'ի a, o, i, և y, որպ. ուղ. Dido, Դիդէ, որ 'ի հոլովիլն առնու ապաթարց, և լինի 'ի սեռականն Dido's, ևն։ Նոյնպէս և յանգեալքն 'ի en, և chen.

Յատուկ անուանք՝ եդեալք բացայայտչաւ՝ ոչ երբէք հոլովին, բայց եթէ առանց յօդի իցեն. գր. König Heinrichs Schiksal, արկածք Թագաւորին Հենրիկոսի : Նոյն կամ թէ անուն ինչ Թուական զկնի ունիցին. գր. der Tod König Ludwigs des sechszehnten, մահ վեշտասաներորդի Լուդովիկոս Թագաւորին, և այլն :

Իգական մականուանք ոչ առնուն զիգական մասնիկն in 'ի վերջս իւրեանց՝ այլ նոյն միայն ընդ արականին գր. Bonifacia Weiss, (և ոչ Weissin) Բոնիփակիա (անուն կնոջ անսովոր յազգիս) Սպիտակ, այս է Ճերմակ: Ripsimé Kohlenbrenner, Հռիփսիմէ Քօլընպրէննէր կամ ածխագործ. և այլն :

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

## ՅԱՂԱԳՍ ԱԾԱԿԱՆԱՑ ԵՒ ԲԱՂԱԴՐՈՒԹԵԱՆ ՆՈՑԱ

Ածականն (Eigenschaft, Beywort) է՝ որ ինքնին ոչ վարի 'ի բանս, այլ պահանջէ յարիլ 'ի գոյականս, իբր յայտնօղ հանգամանաց նոցա : Նոյն բաժանի 'ի Նախատիպ (Stammwörter կամ Wurzelwörter) գր. weiss, սպիտակ. schwarz, սեաւ. gross, մեծ. hoch, բարձր. klein, փոքր. ևն: յԱծանցեալ, գր. weisslich, հարեալ 'ի սպիտակ. mächtig, զօրաւոր. kindisch, տղայական. ևն. և 'ի Բաղադրեալ, գր. freiwillig, ինքնակամ. kurzsichtig, կարճատես. eiskalt, ցրտասառոյց, ևն : Ածանցեալք լինին կամ յարադրութեամբ բաղադրիչ մասնկանց, և կամ ածանցականակերտ վերջայօդիւ. տես և 'ի գլ. ա. յօդ. գ :

Բաղադրիչ մասնիկքն (die Vorsilbe) են be և ge, գր. bequem, հեշտ. gerecht, ուղիղ. ևն : Վերջայօդքն (die Nachsilbe) կարևորագոյնք են և բազմաթիւ. գր. bar, en, er, ern, haft, ig, icht, isch, lich, sam, ևն. յորոց կարի յաճախեալքն են

bar, մասնիկ վաղեմի, որ նշանակէ զբերելն ինչ կամ կրել, գր. fruchtbar, պտղաբեր. ehrbar, արժանի պատուոյ. ևն : Յուցանէ ևս զյաջողականութիւն ինչ

ըստ նշանակութե արմատական բառից, զր. streitbar, պատերազմական, պատերազմասէր. dienstbar, դիւրապատրաստ 'ի ծառայութիւն. reizbar, դիւրագրգիռ, գրգռելի. trunkbar, ըմպելի. sichtbar, տեսանելի. եւն:

sam, 'ի հնումն ունէր զնշանակութիւն բառիս նման, կամ որպէս. բայց այժմ մի և նոյն է ընդ մասնական lich, զր. ehrsam, պատուաւոր, պարկեշտ. arbeitsam, աշխատասէր. եւն:

en, կամ ern, ցուցանեն զնիւթն՝ յորմէ եղեալն է ինչ. զր. golden, ոսկեղէն, ոսկեայ. eisern, երկաթի, երկաթեայ. եւն:

ig, յայտնէ զունօղն կամ զստացօղն իրիք. զր. unschuldig, անմեղ. gütig, բարի, մարդասէր. եւն:

icht, ցուցանէ զնմանութիւն իրիք ընդ այլում. զր. hölzicht, փայտանման. wollicht, ասրաքատակ. steinicht, որպէս զքար. եւն:

isch, 'ի կիր արկանի 'ի յօրինել զածականս յանուանց. զր. französisch, գաղղիական. katholisch, կաթողիկէ, ուղղափառ. musikalisch, երաժշտական. klassisch, ընտրելագոյն. kindisch, տղայական. weibisch, կնամարդի. diebisch, սովորեալ 'ի գողութի. եւն:

lich, ցուցանէ զնմանութի ինչ կամ զվերաբերութի ընդ ումեք. զր. göttlich, ածային, ածանման. männlich, արական, այրական: Ի բայս ցուցանէ զդիւրութի կամ զաջողակութի 'ի գործել ինչ. զր. leserlich, դիւրընթեռնլի. glaublich, հաւատալի. և այլն:

haft, որ ունի ինչ. զր. schamhaft, ամօթխած. fehlerhaft, պակասաւոր, թերի. herzhaft, սրտեայ, քաջասիրտ. և այլն:

Բարդք (zusammengesetzte) լինին 'ի գոյականաց և յածականաց, և անդրադարձկաւ. զր. gesezmässig, օրինաւոր. freiwillig, կամաւոր, ինքնակամ. grasgrün, դալար. եւն:

## ՀՈԼՈՎՈՒՄՆ ԱԾԱԿԱՆԱՑ

Ածականք ունին մի միայն հոլովումն. զի եթէ իցեն միայնակ հոլովին այսպէս.

| | Եզական. | | | Յոգնական. |
|---|---|---|---|---|
| | Արական. | Իգական. | Չէզոք. | յԱմենայն սեռս. |
| Ո. | er. | e. | es. | e. |
| Ս. | es, en. | er. | es. | er. |
| Տ. | em. | er. | em. | en. |
| Հ. | en. | e. | es. | e. |

Իսկ հանդերձ գոյականաւ հոլովին այսպէս.

## ՕՐԻՆԱԿ ՀՈԼՈՎՄԱՆ ԱԾԱԿԱՆԻ ԸՆԴ ԳՈՅԱԿԱՆԻ

Եզական.

| | Արական. | Իգական. | Չէզոք. |
|---|---|---|---|
| Ո. | guter Wein, լաւ գինի. | gute Zeit, լաւ ժամանակ. | gutes Brod, լաւ հաց. |
| Ս. | gutes / guten } Weines, | guter Zeit, | gutes / guten } Brodes. |
| Տ. | gutem Weine, | guter Zeit, | gutem Brode. |
| Հ. | guten Wein, | gute Zeit, | gutes Brod. |

Յոգնական.

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | gute Weine, | Zeiten, | Brode. |
| Ս. | guter Weine, | Zeiten, | Brode. |
| Տ. | guten Weinen, | Zeiten, | Broden. |
| Հ. | gute Weine, | Zeiten, | Brode. |

Ի սեռականն արականին և չէզոքականին յաճախագոյն ևս վարի guten քան gutes, վասն քաղցրութեան հնչմանն. զի լաւ ևս է ասել andern Theiles, այլոյ մասին, քան anders Theiles, որ ոչ ի կիր արկանի: Այսպէս և ածականք յանգեալք ի m, որոց տրականն պարտ էր լինել mem, լինին men; ուղ. arm, աղքատ, տր. լինի armen, և ոչ armem.

Եթէ իցեն բազում ածականք ընդ միոյ գոյականի, յայնժամ առաջին ածականն միայն ունի զկատարեալ հոլովումն այսպէս.

## ՕՐԻՆԱԿ ՀՈԼՈՎՄԱՆ ԱԾԱԿԱՆԱՑ ԸՆԴ ԳՈՅԱԿԱՆԻ

Եզակի.

Ո. guter, alter, rother Wein, լաւ՝ հին՝ կարմիր գինի.
Ս. guten, alten, rothen Weines.
Տ. gutem, alten, rothen Weine.
Հ. guten, alten, rothen Wein. ևն:

Մ՚երթ եւս ածական անուանք ունին ընդ իւրեանս զբառ ինչ որոշիչ, օրինակ իմն՝ զյօդ, զդերանուն կամ զթուական անուն որոց՝ ըստ վերոյգրեալ օրինակիդ՝ հոլովի միայն առաջինն, և ածականն՝ ըստ ամ սեռի հոլովի ըստ չորրորդ հոլովման գոյականաց. միայն 'ի չեզոքական եզակի հայցականն նոյն մնայ ընդ ուղղականին:

| | Եզակի. | | | Յոգնակի. |
|---|---|---|---|---|
| | Արական. | Իգական. | Չէզոք. | յԱմենայն սեռս. |
| Ո. | e. | e. | e. | en. |
| Ս. | en. | en. | en. | en. |
| Տ. | en. | en. | en. | en. |
| Հ. | en. | e. | e. | en. |

## ՕՐԻՆԱԿ ՀՈԼՈՎՄԱՆ ԱԾԱԿԱՆԱՑ ՅՕԴԻՒ

Եզակի.

| | Արական. | Իգական. | Չէզոք. |
|---|---|---|---|
| Ո. | der gute Wein, լաւ գինին. | die gute Zeit, լաւ ժամանակին. | das gute Brod, լաւ հացն: |
| Ս. | des guten Weines, | der guten Zeit, | des guten Brodes. |
| Տ. | dem guten Weine, | der guten Zeit, | dem guten Brode. |
| Հ. | den guten Wein, | die gute Zeit, | das gute Brod. |

Յոգնակի.

յԱմենայն սեռս.

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | die guten Weine, | Zeiten, | Brode. |
| Ս. | der guten Weine, | Zeiten, | Brode. |
| Տ. | den guten Weinen, | Zeiten, | Broden. |
| Հ. | die guten Weine, | Zeiten, | Brode. |

Նոյնպէս հոլովի և ընդ այլ որոշիչ կամ ցուցական անուանս. զր. dieser kranke, schwache Greis, այս հիւանդ և տկար ծեր. սեռ. dieses kranken, schwachen Greises, և այլն։

Եթէ դասանիցի նախ քան զածականն՝ այլ բառ իմն յայտարարական՝ որ չունիցի կատարեալ հոլովումն ինչ, անկանի ընդ միով երկուց օրինակացս։ Որպիսի են բառքս kein, ոչ ոք, viel, բազում. wenig, սակաւ. mehr, առաւել. mein, իմ. dein, քո, sein, իւր. ich, ես. du, դու. er, (արակ.) sie (իգա-կան) նա. ևն։

Եթէ ածականաց յանդելոց 'ի յոգնակի ուղղականն 'ի en, նախադաս դասցի մի 'ի բառիցս einige, etliche, քանի մի. viele, mehrere, manche, բազումք. wenige, սակաւք. alle, ամ. solche, այսպիսի. welche, որ, յուղղականն և 'ի հայցականն կորուսանեն ածականքն զտառն n, զր. mehrere schöne Blumen, բազում գեղեցիկ ծաղիկք, կամ զբազում գեղեցիկ ծաղիկս. և այլն։

Ածականք՝ որք եղեալ են յօդիւ, կարեն յերիս սեռս ևս 'ի կիր արկանել, իսկ 'ի հոլովիլն՝ սեռականն արականին և իգականին յանգի 'ի en, բայց չէզոքին 'ի s, կամ es; զր. սեռ. des Weisen, իմաստնոյ (արական). der Weisen, (իգական), իմաստնոյ. des Grüns, (չէզոք), կանաչի. ևն։

## ԲԱՂԴԱՏՈՒԹԻՒՆ ԱԾԱԿԱՆԱՑ

Որպէս յայլ ամ լեզուս, սոյնպէս և առ գերմանացիս երրեակ կարգք են բաղդատութե (Steigerung) ածականաց, որ են դրական (positiv, կամ ungesteigent) զր. gross, մեծ. klein, փոքր, ևն. բաղդատական (Vergleichungstufe կամ comparativus) զր. grösser, մեծագոյն. kleiner, փոքրագոյն, ևն. և գերադրական (Oberstufe, կամ superlativus), զր. grösste, ևս մեծագոյն, ամենամեծ. kleinste, ևս փոքրագոյն, ամենափոքր. ևն։

Երկին օրինակաւ զդրականն 'ի բաղդատական և 'ի գերադրական փոխեն գերմանացիք. կամ փափո-

խութն մի և նոյն դըրականին, և կամ բացատրութն։ Նախ՝ փոփոխութն մի և նոյն դըրականին. զի յաւելեալ յայն զմասնիկս er կամ r, լինի բաղդատական. և կամ st, կամ est, լինի գերադրական. դր̃. gross, մեծ. grösser, մեծագոյն. grössest, ամենամեծ. lang, երկայն. länger, երկայնագոյն. längst, ևս երկայնագոյն. ևն̃։

Եթէ դըրականքն յանգիցին 'ի er, կամ 'ի el, 'ի բաղդատականին կորուսանեն զe տառն՝ որ յառաջ քան զr կամ l, դր̃. bitter, դառն. bittrer, դառնագոյն (և ոչ bitterer). ևն̃։

Յառաջ քան զգերադրական մասնիկս est, երբեմն մնայ տառս e; դր̃. der sanfteste, ևս հեզագոյնն. և երբեմն ոչ, դր̃. der jüngste, ևս մանկագոյնն. ևն̃։ Նոյնպէս յապաւի և 'ի բառս յանգեալս 'ի ig, lich, bar, fach, sam, em, en, և r.

Բազմաց 'ի դըրականաց 'ի լինելն բաղդատական կամ գերադրական՝ փոխի ձայնաւորն. դր̃. arm, աղքատ. ärmer, ärmst: kurz, կարճ. kürzer, kürzest: lang, երկայն. länger, längst: nass, թրջեալ, թաց. roth, կարմիր. scharf, բարկ, հատու. schwach, տկար. schmal, նեղ. bange, երկչոտ. grob, հաստ. hart, կարծր. jung, նորատի. kalt, ցուրտ. klar, պայծառ, պարզ. klug, խոհեմ. krank, հիւանդ. և այլն։ Իսկ հետևեալքդ անփոփոխ ունին զձայնաւորն. դր̃. bunt, բազմերանգ. faul, փտեալ, ծոյլ. blau, կապոյտ. falsch, սուտ. fahl, դեղին գորշ. froh, գոհ. gesund, առողջ. hohl, գոգաւոր. kahl, կնտակ. karg, կծծի. rund, բոլորակ. matt, նուաղեալ. lahm, կաղ. roh, խակ. sanft, հեզ. stolz, հպարտ. toll, խելագար. voll, լի. satt, յագ. los, ազատ, զերծ. nackt, մերկ. platt, տափարակ. gerade, ուղիղ. hold, քաղցրաբարոյ, ևն̃։ Յայսոսիկ վերաբերին և բառք ածանցեալք 'ի բայից. դր̃. schwankend, դողդոջուն, ևն̃. ևս և որոց են վանկք երկբարբառք. դր̃ rauh, խորտաբորտ, դժնեայ. ևն̃։

Են ևս ածականք՝ որոց բաղդատականն և գերադրական խոտորին յոյժ 'ի դըրականէն, դր̃.

| Դրական. | Բաղդատական. | Գերադրական. |
| --- | --- | --- |
| gut, լաւ. | besser, | best. |
| hoch, բարձր. | höher, | höchst. |
| nahe, մօտ. | näher, | nächst. |
| bald, վաղ. | eher, | ehest. |
| viel, բազում. | mehr, | meist. եւն։ |

Են և ածականք դրականք՝ որոց մի աստիճանն միայն վարի, և միւսն կամ կորուսեալ է և կամ պակասի. զր.

| Դրական. | Գերադրական. |
| --- | --- |
| das äussere, արտաքինն. | der äusserste. |
| der hintere, յետինն. | der hinterste. |
| der innere, ներքինն. | der innerste. |
| der untere, ստորինն. | der unterste. եւն։ |

Իսկ բաղդատականիս minder, փոքրագոյն, որոյ գերադրականն է mindest; չգտանի դրականն min, և փոխանակ նորա վարի wenig, սակաւ, փոքր. եւն։

Երկրորդ՝ բացատրութիւն դրականն փոխի 'ի բաղդատական բառիւքս viel, weit, mehr, noch, առաւել. ungleich, աննման. wenig, minder, նուազ. sehr, խիստ. ausserordentlich, höchst, և եւս, կարի. և այլն։

Դարձեալ մակադրութեամբ մասնկանս erz; զր. erzdumm, եւս յիմարագոյն. եւն։ Երբեմն եւս լինի բարդութիւն բառից. զր. bettelarm, (աղքատ 'ի մուրանալ), կարի աղքատ. kohlschwarz, 'սեւագոյն, (սեւ որպէս ածուխ). schneeweiss, սպիտակագոյն, (սպիտակ որպէս ձիւն). eiskalt, (ցուրտ որպէս սառն), ցրտագոյն. brühheiss, (ջերմ որպէս զթան), կարի ջերմ. steinreich (հարուստ ականք պատուականօք), կարի հարուստ. եւն։

Իսկ զգերադրականն նշանակեն բառիւս aller ամենա—, զր. der allergrösste, ամենամեծն. եւն. լինի եւս վանկիւս an, auf, zum, in, զր am besten, ամենա-

լաւն. am wenigsten, ևս սակաւագոյնն. auf das schönste, ամենագեղեցիկն. im mindesten, ամենասակաւն. ևն ։

## ՅՕԴՈՒԱԾ Դ.

### ՅԱՂԱԳՍ ԹՈՒԱԿԱՆ ԱՆՈՒԱՆՑ

Թուական անունն՝ (Zahlwort) առ գերմանացիս՝ է ըստ ինքեան մասն ինչ բանի քերականութե, և բաժանի 'ի բացարձակս (Grundzahlen) որ արձակապէս նշանակեն զթուեալսն. և 'ի դասականս (Ordnungszahlen), որ կարգ ինչ ցուցանեն 'ի թուեալսն ;

Բացարձակք են կրկին, որոշեալ կամ որոշող. (bestimmende), և անորոշ կամ ոչ որոշող (nicht bestimmende). որոշեալքն են.

ein կամ eins, մի, պիր.
zwei, երկու, իքի.
drei, երեք, իւչ.
vier, չորս, տէօրթ.
fünf, հինգ, պէշ.
sechs, վեց, ալթը.
sieben, եօթն, եէտի.
acht, ութ, սէքիզ.
neun, ինն, տօգուզ.
zehn, տասն, օն.
eilf, մետասան, օնպիր.
zwölf, երկոտասան, օնիքի.
dreizehn, երեքտասան, օնիւչ.
vierzehn, չորեքտասան, օն տէօրթ.
fünfzehn, հնգետասան, օնպէշ.
sechzehn, վեշտասան, օն ալթը.
siebenzehn, եօթնևտասան, օնեէտի.
achtzehn, ութևտասան, օն սէքիզ.
neunzehn, իննևտասան, օն տօգուզ.
zwanzig, քսան, եիրմի.
ein und zwanzig, քսանև մի. ևն ։
dreissig, երեսուն, օթուզ.
vierzig, քառասուն, գըրգ.
fünfzig, յիսուն, էլլի.
sechzig, վաթսուն, ալթմըշ.
siebenzig, եօթանասուն, եէթմիշ.
achtzig, ութսուն, սէքսէն.
neunzig, իննսուն, տօքսան.
hundert, հարիւր, եիւզ.
hundert eins, հարիւր և մի, եիւզ պիր.
hundert zwei, հարիւր և երկու, եիւզ իքի.
ein hundert, հարիւր, եիւզ, պիր եիւզ.

zwei hundert, երկու հարիւր, ԾՎԱՅ ՀՈՒՆԴ.
Tausend, հազար, ԹԱՈՒԶ.
ein Tausend, հազար, ԹԱՈՒԶ, ԱՅՆ ԹԱՈՒԶ.
zwei Tausend, երկու հազար. ԾՎԱՅ ԹԱՈՒԶ.
Tausend und eins, հազար և մի, ԹԱՈՒԶ ԱՅՆ.
zehn Tausend, բիւր, ԾԷՆ ԹԱՈՒԶ.
Million, միլիոն, հազարիցս հազար, ԱՅՆ ՄԻԼ, ԹԱՈՒԶ ՄԱԼ ԹԱՈՒԶ։

Ընդ թուական անուանս համարի և բառս kein, ոչ ոք կամ ոչ մի։ Հոլովումն սոցա պակասաւոր է, զի չունին զամ հոլովս և սակաւ ուրեք յայտնեն զսեռս. բայց 'ի բառէս ein, մի, որ հոլովի զանազան եղանակաւ. մերթ յօդիւ, մերթ դերանուամբ, և մերթ առանց երկոցուն սոցա՝ ըստ պահանջելոյ գոյականաց։

ա. Նախադասեալ գոյականի առանց որոշիչ գոյականի կամ յօդի կամ դերանուան՝ հոլովի այսպէս.

| | Արական. | Իգական. | Չէզոք։ |
|---|---|---|---|
| Ու. | ein Mensch, մարդ մի. | eine Frau, կին մի. | ein Kind, զաւակ մի. |
| Ս. | eines Menschen, | einer Frau, | eines Kindes. |
| Տ. | einem Menschen, | einer Frau, | einem Kinde. |
| Հ. | einen Menschen, | eine Frau, | ein Kind. |

բ. Ունելով ընդ իւր զյօդ կամ զդերանուանս dieser, jener, թէպէտ գոյականաւ իցէ, թէպէտ առանց գոյականի՝ հոլովի այսպէս.

| | Արական. | Իգական. | Չէզոք. |
|---|---|---|---|
| Ու. | der eine, մին. | die eine, մին. | das eine, մին։ |
| Ս. | des einen, | der einen, | des einen. |
| Տ. | dem einen, | der einen, | dem einen. |
| Հ. | den einen, | die eine, | das eine. |

գ. Եթէ նախադաս իցէ նմա դերանուն ինչ ստացական mein, dein, sein, գոյականաւ հանդերձ կամ առանց գոյականի՝ հոլովի այսպէս։

| Արական. | Իգական. | Չէզոք. |
|---|---|---|
| Ո. mein einer, | meine eine, | mein eines, իմ մի. |
| Ս. meines einen, | meiner einen, | meines einen. |
| Տ. meinem einen, | meiner einen, | meinem einen . |
| Հ. meinen einen, | meine eine, | mein eines . |

Է. Իսկ եթէ ein, չունիցի յառաջոյ իւր յօդ, և ոչ զկնի իւր զգոյական, հոլովի որպէս զանորոշ յօդն առանց գոյականի. զորմէ տես 'ի յօդն ։ Նա և zwei և drei եւս հոլովին որպէս զյօդն անորոշ, բայց այսու զանազանութեամբ՝ զի յերկս սեռս նոյն միով հոլովիւն վարին այսպէս. ուղ. zwei, սեռ. zweier, տր. zweien, հայց. zwei, եւն ։

Եթէ գոյականն ունիցի զնշանակութիւն տրականի, յայնժամ թուական անունն դնի յուղղականն օր., aus drei Dingen, յերից իրաց. եւն ։ Մնացեալ բացարձակք՝ յայնժամ միայն հոլովին 'ի տրականն, յորժամ միայնակ իցեն՝ զօրութեամբ յարաբերելով զգոյականն. օր., mit sechsen, (որպէս թէ էր mit sechsen Pferden) fahren, վեցաձի երթալ կառօք. եւն ։

'Ի ռամկական խօսս և vier, չորս. fünf, հինգ. մինչև 'ի zwölf, երկոտասան, հոլովին 'ի յոգնակի ուղղականն և 'ի տրական. օր. alle viere, չորեքին 'ի միասին. es sassen fünfe bei Tische, հինգ (անձինք) նստէին 'ի սեղանի. [illegible]. ich habe es vieren gegeben, ետու ես չորեցունցն. [illegible]. եւն ։

Ընդ բացարձակ թուականս համարին և մասնականքն կազմեալք բառիւս halb, օր. dritthalb, երկու և կէս. zehnthalb, ինն և կէս. եւն ։ Բայց zweihalb ոչ լինի. և փոխանակ նորա վարի anderthalb, մի և կէս, այսի եւս ein und halbe, և ոչ eine halbe, որ նշանակէ զկէսն, կէս մի. [illegible]։

Բացարձակք 'ի կիր արկանին և եւս իբրև գոյականս. օր., eine Eins, մին, [illegible]. die Fünf, հինգն, [illegible]. die Zwölfe, երկոտասանն, [illegible]. das Hundert, հարիւրն, [illegible]. das Tausend, հազարն, [illegible]. եւն ։ 'Ի բացարձակաց աստի երբեմն կազմին և գոյական անուանք. օր., ein zweier, մի երկուքնոց,

ալթըլըք. ein Sechser, մի վեցնոց, եիւզլիւք. ein Hunderter, մի հարիւրնոց, եւն. das Drittel, երրորդ մասն, իւչլիւ. das Viertel, քառորդ, չէյրէք. ein Zwilling, երկուորեակ, եքիզ. եւն:

Փոխանակ բառիս zwei, երկու՝ վարի բազում անգամ beide, երկաքանչիւր, որ նշանակէ զմիաւորութիւնն երկուց առարկայից, և հոլովի. իքի. beide Männer, երկաքանչիւր այրք, իքի. in Gegenwart beider, առաջի երկաքանչիւրոց, իքի. er hat es beiden gesagt, Նա ասաց զայն երկաքանչիւրոցս, իքի. beide Augen, զերկաքանչիւր աչս: Իսկ beides երկաքանչիւր, զիրաց միայն ասի և ոչ զանձանց, և մնայ առանց գոյականի:

Անորոշ բացարձակք են viele, բազում. wenige, սակաւ. mehrere, բազում. mancher, ոմանք, բազումք. einige, է՛ որ. etliche, քանի ինչ. ինչ, իմն. jeder, իւրաքանչիւր ոք. jeglicher, ամ ոք. alle, ամենեքին: Նոյնպէս և մասնիկք etwas, ինչ. ganz, sämmtlich, բոլորովին. sammt, համանդերձ, 'ի միասին. insgesammt, ամենեքին. theils ... theils ..., ըստ մասին ... և ըստ մասին ... halb ... halb ..., կէսն ... և կէսն:

Դասականք (Ordnungszahlen) ցուցանեն զկարգ ինչ 'ի թուելումն. և են հետևեալքն.

der, die, das erste, առաջին, պիրինճի, իլք.
der zweite, երկրորդ, իքինճի.
der dritte, երրորդ, իւչիւնճիւ.
der vierte, չորրորդ, տէօրտիւնճիւ. եւն:
der neunzehnte, իննևտասներորդ, օնտօգուզունճու.
der zwanzigste, քսաներորդ, եիրմինճի, եւն.
der hundertste, հարիւրերորդ, եիւզիւնճիւ.
der tausendste, հազարերորդ, պինինճի:

Ընդ դասականս համարի և բառս der, die, das letzte, վերջինն: Ի գերմանացիս կրկին ազգք են թուանշանաց (Ziffer), հնդկայն (indisch), և հռոմմայեցւոց (römisch), որ են այսոքիկ.

| Հնդկայ. | Հռովմ. | Հնդկայ. | Հռովմ. |
|---|---|---|---|
| 1 | I | 50 | L. |
| 2 | II. | 60 | LX. |
| 3 | III. | 70 | LXX. |
| 4 | IV. | 80 | LXXX. |
| 5 | V. | 90 | XC. |
| 6 | VI. | 100 | C. |
| 7 | VII. | 200 | CC. |
| 8 | VIII. | 300 | CCC. |
| 9 | IX. | 400 | CD. |
| 10 | X. | 500 | D. |
| 11 | XI. | 600 | DC. |
| 19 | XIX. | 700 | DCC. |
| 20 | XX. | 800 | DCCC. |
| 30 | XXX. | 900 | CM. |
| 40 | XL. | 1000 | M. |

## ՅՕԴՈՒԱԾ Ե.

### ՅԱՂԱԳՍ ԴԵՐԱՆՈՒԱՆ

*Դերանունն* (Fürwort) *դնի փոխանակ անուան՝ ցուցանելով զորոշեալ ինչ դէմս, և բաժանի յէականս* (persönliche), *'ի ստացականս* (zueignende), *'ի ցուցականս* (anzeigende), *յորոշիչս* (vorherbestimmende), *'ի յարաբերականս* (beziehende), *և յանորոշս* (unbestimmte).

*Էականքն են ցուցակք երից դիմաց՝ յորոց առաջինն է որ խօսի, գր.* ich, *ես. երկրորդն՝ առ որ խօսի, գր.* du, *դու. և երրորդն՝ զորմէ խօսի, գր.* er, sie, es, *նա. 'ի սոցանէ առաջինն և երկրորդն միօրինակ յամ սեռս վարին. բայց երրորդն յարականն լինի* er, *յիգականն* sie, *և 'ի չէզոքն* es, *որք և հոլովին այսպէս.*

| Եզական. | | Յոգնական. |
|---|---|---|
| Ո. | ich, ես, պէն. | wir, մեք, պիզ. |
| Ս. | meiner (mein), իմ, պէնիմ. | unser, մեր, պիզիմ. |
| Տ. | mir, ինձ, պանա. | uns, մեզ, պիզէ. |
| Հ. | mich, զիս, պէնի. | uns, զմեզ, պիզի. |

| Եզական. | | Յոգնական. |
|---|---|---|
| Ո. | du, դու, սէն. | ihr, դուք, սիզ. |
| Ս. | deiner (dein), քո, սէնին. | euer, ձեր, սիզին. |
| Տ. | dir, քեզ, սանա. | euch, ձեզ, սիզէ. |
| Հ. | dich, զքեզ, սէնի. | euch, զձեզ, սիզի: |

Եզական.

| | Արական. | Իգական. | Չէզոք. | | |
|---|---|---|---|---|---|
| Ո. | er. | sie. | es. | նա, | օ. |
| Ս. | seiner (sein). | ihrer (ihr). | seiner (sein). | նորա, | օնուն. |
| Տ. | ihm, sich. | ihr, sich. | ihm, sich. | նմա, | օնա. |
| Հ. | ihn, sich. | sie, sich. | es, sich. | զնա, | օնու. |

Յոգնական.

յԱմենայն սեռս.

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | sie, | նոքա, | օնլար. |
| Ս. | ihrer, | նոցա, | օնլարըն. |
| Տ. | ihnen, sich. | առ նոսա, | օնլարա. |
| Հ. | sie, sich. | զնոսա, | օնլարը: |

Երկրորդ դէմն du, դու, միայն յընտանեկան կամ յանարգական և կամ յիշխանական զրոյցս վարի առ գերմանացիս, զի հասարակաբար յերրորդ դէմն խօսին ընդ միմեանս. այսու ևեթ զանազանուք, զի ընդ պատուաւորս և ընդ մեծարոյս 'ի յօքնականն խօսին. իսկ ընդ նուաստս և ընդ անարգս յեզականն. որ. յասել ուրուք Sie sollen hieher kommen, նշանակէ՝ (նոքա) տէրութիւդ ձեր եկեսցէ աստ, ճէնապընըզ պուրայա կէլսինլէր. իսկ er կամ sie soll hieher kommen, (նա, այր կամ կին եկեսցէ աստ) է անարգական, և նշանակէ՝ անարգդ դու, եկ աստ, կէլ ՚բէօյլէ՚:

Սոցա սեռականքն mein, dein, sein և ihr, ուր ու-

րեմն վարին, և այն միայն 'ի բանաստեղծութ․ կամ յաշխարհիկ զրոյցս․ զր․ um mein (կմ dein կմ ihr) Willen, ըստ կամաց իմոց (․ կամ քոց կամ նորա)։

Յաճախ ուրեք սեռականք դերանուանցս վարին ընդ բառիցս halben, wegen, willen, 'ի նշանակել՝ վասն, բայց միշտ փոխելով զվերջին տառն r, 'ի t, զր․ meinetwegen, վասն իմ․ deinethalben, վասն քո․ ihretwillen, վասն նորա։

Փոխանակ երրորդ դիմի վարին և բառքս jemand, ոք․ einer, eine, eines, ումն, ոք․ և man և es; յորոց երկոքին առաջինքն առնուն 'ի սեռականն s, և 'ի տրականն՝ յոր բազմիցս մնան անփոփոխ՝ զմասնիկն en; և այն եթէ հարկ լիցի 'ի բացայայտել ինչ, զր․ ich habe es jemanden gegeben, ես ետու զայն ումեք։

Իսկ man և es մնան միշտ յուղղական հոլովն, զր․ man ruft, կոչի․ man sagt, ասի․ es blitzt, փայլատակէ․ es regnet, անձրևէ․ եւն։

Բառս sich, որ անփոփոխ մնալով վարի միայն յեզակի և 'ի յոգնակի տրականն և 'ի հայցականն երրորդ դիմի նշանակէ իբրև զմերս ինքեան, զինքն, ինքեանց, զինքեանս։ Յետականսն վերաբերին և հարցականքս wer? ո՞վ, (որոյ սեռականն է wessen?) welcher? արական․ welche? էգական․ welches? չէզոք․ ո՞ր․ և was? զի՞նչ, որ մնայ միշտ անփոփոխ։

## ՍՏԱՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒԱՆՔ

Ի ստացականացն կէսք թանձրացեալ ասին, զր․ mein, իմ․ dein, քո․ sein, արական․ ihr, էգական, նորա․ unser, մեր․ euer, ձեր․ և կէսք վերացեալ, զր․ der, die, das meinige, իմոյին․ կամ deinige, քոյին․ կամ seinige, արական․ ihrige, էգական․ իւրային․ կմ unserige, մերային․ եւն։ Թանձրացեալքն հոլովին այսպէս․

| Եզական. | | | | Յոգնական. |
| --- | --- | --- | --- | --- |
| Արական. | Իգական. | Չէզոք. | | Ամենայն սեռս. |
| Ո. mein, | meine, | mein, | իմ. | meine. |
| Ս. meines, | meiner, | meines, | իմոյ. | meiner. |
| Տ. meinem, | meiner, | meinem, | իմոյ. | meinen. |
| Հ. meinen, | meine, | mein, | զիմ. | meine. |

Եթէ լինիցին սոքա յարաբերականք, առնուն ըզմասնիկս er յարականն, e յիգականն, և es 'ի չէզոքականն՝ ըստ պահանջման գոյականաց. որպէս, meiner, meine, meines, իմ. deiner, deine, deines, քոյ. են: Իսկ վերացեալքն meinige, deinige, են, կամ զօրութ ունին զգոյականսն, և կամ ինքեանք վարին իբրև զգոյական: Զսոսա բազում ուրեք վարեն բանաստեղծք կրճատմամբ, և առնեն գոյականաբար Meine, իմն. Deine, քոյն. Seine, իւրն:

## ՑՈՒՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒԱՆՔ

Ցուցականք են dieser, արական. diese, իգական. dieses, չէզոք. այս, այդ. և jener, արակ. jene, իգ. jenes, չէզոք. այն, նա. և der, die, das, որ բազմիցս 'ի կիր արկանի 'ի տեղի բառիցս dieser, diese, dieses. Երկու առաջինքն հոլովին որպէս զյօդն der, die, das. Եթէ հետևեսցի սոցա ածական ինչ, յայնժամ հոլովին որպէս թէ ունէին յառաջոյ զյօդ. օր. diese schönen (և ոչ schöne) Bücher, այսոքիկ գեղեցիկ գրեանք. որպէս և ասի meine lieben Freunde, իմ սիրելի բարեկամք. զչէզոքն dieses բազումք գրեն համառօտելով dies, և ոմանք diess, կամ diss, այլ առաջինն վարի յաճախ:

Եթէ der, die, das, եդեալ փոխանակ դերանուանցս dieser, diese, dieses, ունիցին ընդ իւրեանս զգոյականն, հոլովին որպէս զյօդն. բայց եթէ իցեն առանց գոյականի՝ հոլովին այսպէս.

| | Եզական. | | | Յոգնական. |
|---|---|---|---|---|
| | Արական. | Իգական. | Չէզոք. | Ամենայն սեռս. |
| Ո. | der, | die, | das, այս, այդ, այն. | die. |
| Ս. | dessen, | deren, | dessen (dess). | derer. |
| Տ. | dem, | der, | dem. | denen. |
| Հ. | den, | die, | das. | die. |

Օրինակ. der König, dessen Thaten bekannt sind, Թագաւորս այս՝ որոյ գործք յայտնի են. die Natur, deren Kraft wir noch nicht ganz kennen, բնութիւն այս՝ որոյ զօրութեան չև ևս քաջ խելամուտ եմք. ևն։ Համառօտութիւն բառիս dessen 'ի dess, լինի յոտանաւորս կամ 'ի վսեմ շարադրութիւնս։

Որոշիչ ասին ցուցականքն՝ որք 'ի պարբերութե որոշեն զանուն բայի, և են derjenige, derselbe, selbiger, solcher և der (եթէ իբրև զհամառօտեալն բառիս derjenige վարեսցի փոխանակ նր). Նա ինքն, նոյն, այն. օր. գր. derjenige, welcher mir es gesagt hat, Նա՝ որ ասաց ինձ զայս. օրի պանա պօանոա փէ-փէ, (պօանոա պանա փէյէն)։ Բառքս derselbe և derjenige, նոյնպէս և derselbige ունին զորոշեալ հոլովմունս յօդի, զի 'ի սեռականն յոգնականին ոչ լինին dererjenigen, այլ derjenigen. Der որ սակաւ որոշիչ է՝ հոլովի որպէս զդերանունն ցուցական։

## ՅԱՐԱԲԵՐԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒԱՆՔ

Յարաբերականք են welcher, der, wer, was և so, որ։ Յորոց der հոլովի որպէս զորոշիչ դերանունն, բաց 'ի յոգնակի սեռականէն՝ որ լինի deren. Welcher, միայնակ առանց գոյականի՝ ոչ կարէ կալ 'ի սեռական հոլովս, և փոխանակէ զնա դերանունս der, օր. der Mann, dessen (և ոչ welches) Umstände ich kenne, Այրն այն՝ զորոյ զհանգամանս իրացն ճանաչեմ. ևն. և հոլովի այսպէս.

| | Եզակի. | | | Յոգնակի. |
|---|---|---|---|---|
| | Արական. | Իգական. | Չէզոք. | յԱմենայն սեռս. |
| Ո. | welcher, | welche, | welches. | welche. |
| Ս. | welches, | welcher, | welches. | welcher. |
| Տ. | welchem, | welcher, | welchem. | welchen. |
| Հ. | welchen, | welche, | welches. | welche. |

Իսկ wer և was, (որ), զորս որոշել պարտ է 'ի հարցական դերանուանց, վարին միայն յեզականն. յորոց առաջինն յարաբերէ զանձն, առանց որոշելոյ զսեռն. իսկ երկրորդն զիրս, և չդնի երբէք զկնի գոյականի. և ոչ յամ հոլովս վարի, այլ միայն յուղղականն և 'ի հայցականն. զր. wer Verstand hat, der hat einen grossen Schatz. Որ ունի զհանճար, ունի գանձ մեծ. wem viel gegeben ist, von dem wird viel gefordert werden. Որում շատ տուաւ, շատ խնդրեսցի 'ի նմանէ. das, was du mir sagtest, ist eingetroffen. Ա՛յն՝ զոր ասէիրն ինձ՝ եղև. alles was ich gethan habe, Զամենայնն զոր արարի, ևն։

Իսկ so ոչ փոփոխի երբէք և վարի միայն յուղղականն և 'ի հայցականն. և այն ոչ անխտիր, այլ ուր հարկ իցէ 'ի յաճախել յարաբերականաց, առ 'ի չկրկնելոյ ստէպ զնոյն դերանուն. զր. die Blumen, so wir sahen. Ծաղիկք՝ զորս մեք տեսանէաք. ևն։ Անորոշ յարաբերականքն են՝ որք չունին զսեռ կամ զթիւ, և են այսոքիկ։

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | jemand, ոք, ոմն. | niemand, ոչ ոք. | jedermann, իւրաքանչիւր. |
| Ս. | jemands, | niemands, | jedermanns, կամ լաւ ևս eines jeden. |
| Տ. | jemanden կամ jemand, | niemanden, կամ niemand, | պակասի։ |
| Հ. | jemanden կամ jemand, | niemanden կամ niemand, | jedermann. |

Յայսոսիկ մարթ է յաւելուլ և զհետադասս, որ նշանակէ իւրաքանչիւր ոք, հէր ղէրէ կամ ղէրէսէ։

| Արական. | Իգական. | Չէզոք. |
|---|---|---|
| Ո. ein jeder, | eine jede, | ein jedes. |
| Ս. eines jeden, | einer jeden, | eines jeden. |
| Տ. einem jeden, | einer jeden, | einem jeden. |
| Հ. einen jeden, | eine jede, | ein jedes. |

## ՅՕԴՈՒԱԾ Զ.

### ՅԱՂԱԳՍ ԲԱՅԻՑ

Բայն (Zeitwort) նշանակէ զառս կամ զկիրս կամ զլինելութիւն իրաց ըստ ժամանակաց՝ ըստ որոշեալ դիմաց, և ունի եղանակ (Art), և ժամանակ (Zeit); և սոքա ունին թիւ (Zahl), և դէմս (Person).

Եղանակք են պէսպէս կերպք նշանակելոյ զառս և զկիրս բայից, որք են չորս. Սահմանական (gewisse կամ bestimmte Art), Ստորադասական (bedingte Art), Հրամայական (befehlende, կամ gebietende Art), և Աներևոյթ (unbestimmte կամ ungewisse Art).

Ժամանակք ցուցանեն զառս և զկիրս բայից՝ լինել յայս կամ յայն ինչ ժամանակի. և են երեք, Ներկայ (gegenwärtige Zeit), Անցեալ (vergangene Zeit), և Ապառնի (zukünftige Zeit).

Անցեալն բաժանի յԱնկատար (erste Vergangenheit), յորում գործողութիւն է անցեալ՝ բայց առանց կատարելութեան, զր. ich schrieb, ես գրէի, եազարտըմ. և այլն. ՚ի Կատարեալ (zweite Vergangenheit), յորում առք կամ կիրք կատարեալ են. զր. ich habe gelesen, ընթերցայ, օգուտում. ևն. և ՚ի Գերակատար (dritte Vergangenheit), յորում գործողութիւն ինչ կատարելապէս անցեալ է, նկատելով յայլս՝ որք սկսանին. զր. ich hatte einen Brief geschrieben, so kam mein Freund zu mir. Ես գրեալ էի զնամակ ինչ յորժամ եկն առ իս բարեկամն իմ, ևն.

Ապառնին բաժանի յերկուս, ՚ի պարզ (einfache Zukunft), զր. ich werde schreiben, գրեցից. եազաճաղըմ. ևն. և ՚ի բաղադրեալ (Zusammengesetzte Zu-

kunst), օր. ich werde geschrieben haben, գրեալ լինելոց եմ. եազմըշ օլաճաղըմ. եւն.

Թիւք բայից մտածին ըստ եզականութեան և ըստ յոգնականութեան նոցա, և են եզական (Einheit, Einzahl, einfache Zahl), և յոգնական (Mehrheit, Mehrzahl, vielfache Zahl).

Դէմք բայից իմացուցանեն զմիտս բառից առ որոշեալ ոք, զի եթէ գործողութիւն իցէ այնր՝ որ խօսի, ասի առաջին դէմ (die erste Person), օր. ich gehe, երթամ, (պէն) կիտէրիմ. եւն. եթէ այնր առ որ է բանն՝ է երկրորդ դէմ (die zweite Person), օր. du gehest, երթաս, (սէն) կիտէրսին. եւն. Բայց հայեցեալ ՚ի գործողութիւն նորա՝ զորմէ է բանն՝ կոչի երրորդ դէմ (die dritte Person), օր. er geht, երթայ (այր), sie sah, տեսանէր (կինն) եւն.

Բայք բաժանին յերկուս, յէականս և յառաքականս. Էական կամ օժանդակ բայն (Verbindungswort) է seyn, ել, լինել. որ գտանի յամ խօսս՝ կամ զօրութեամբ և կամ ներգործութեամբ. Առաքականք՝ (Eigenschaftszeitwort) են ամենայն բայք՝ որք նշանակեն զատս կամ զկիրս ինչ, և բաժանին յանցողականս և ոչ յանցողականս.

Անցողականն (übergehendes Zeitwort) ցուցանէ զանցանելութիւն ինչ ելեալ յումեքէ՝ որ ներգործէ յայլ ոք, օր. ich liebe, սիրեմ. Ոչ անցողականն (nicht übergehendes) որ է չէզոք, չունելով այլ ինչ առարկայ ներգործութեան, մնայ գործողութիւն յինքեան. օր. der Mensch schläft, մարդն այն ՚ի քուն լինի.

Անցողականք են կամ ներգործականք (thätig), օր. lieben, սիրել, եւն. և կամ կրաւորականք (leidend), օր. geliebt werden, սիրեալ լինել. եւն. Են և բայք՝ որք ըստ ինքեան ունին զնշանակութիւն ներգործականի և կրաւորականի միանգամայն, և ասին ձայնակրական (zurükführend), օր. sich schämen, ամաչել. sich lieben, սիրել զինքն, եւն. Գտանին ՚ի գերմանացիս և շրջաբանականք՝ (umschreibend) որք շրջաբանութ. բացատրեն զեղանակ, զժամանակ և զդէմս հետևեալ բայից, և են ՚ի բացատրել զեղանակն. dürfen, իշխել, համարձակել. kön-

nen, կարող լինել. lassen, թողուլ. mögen, կամիլ. müssen, պարտաւորել. sollen, հարկ լինել։ Իսկ 'ի բացատրել զժամանակս և զսեռս՝ են seyn, լինել, ել, գոլ. werden, եղանիլ, լինել. և haben, ունել, ել։ Բայքս seyn, werden, և haben, անուանին օժանդակք (Hülfszeitwörter), զի օժանդակութ̃ սոցա խոնարհին ամ̃ բայք։

Բայք են կամ դիմաւոր (persönlich), որպէս ամ̃ բայք որք ունին զդէմս, և կամ դիմազուրկ (unpersönlich), որք չունին այլ դէմս, բայց միայն զերրորդն. որպէս es regnet, անձրևէ. es frieret, ցրտանայ, սառի. ևն։

### ԽՈՆԱՐՀՄՈՒՆՔ ԲԱՅԻՑ

Խոնարհումն բայից (Abwandelung) է պէսպէս փոփոխութիւն մի և նոյն բայի 'ի զանազան վերջաւորութիւնս՝ 'ի դէմս և 'ի ժամանակս, թէ ըստ եղականին և թէ ըստ յոգնականին. և բաժանի 'ի կատարեալ՝ որ ունի զամ̃ եղանակս՝ ժամանակս և դէմս. և 'ի պակասաւոր՝ որ չունի զամենեսին բոլորովին։

Երկուս օրինակս ունիմք խոնարհմանց՝ ըստ ներգործական, որ լինի կամ կանոնաւոր (regelmässig), և կամ անկանոն (unregelmässig), և կրաւորական՝ որ բաղադրի օժանդակ բայիւս seyn, werden, և haben.

### ԽՈՆԱՐՀՈՒՄՆ ՕԺԱՆԴԱԿ ԲԱՅԻՍ SEYN. ԵՒ ԼԻՆԵԼ·

| ՍԱՀՄԱՆԱԿԱՆ | ՍՏՈՐԱՍԱԿԱՆ |
|---|---|

Ներկայ։

Առաջին։

| | |
|---|---|
| ich bin, եմ, իմ. | ich sey, իցեմ, իսէմ. |
| du bist, ես, սին. | du seyst, իցես, իսէն. |
| er, sie, es ist, է, դիր. | er, sie sey, իցէ, իսէ. |

### Յոգնական :

wir sind, եմք, իզ.
ihr seyd, էք, սինիզ.
sie sind, են, դիրլէր.

wir seyen կամ seyn, իցեմք, իսէք.
ihr seyet կամ seyd, իցէք, իսէնիզ.
sie seyen կամ seyn, իցեն, իսէլէր.

## Անցեալ անկատար :

### Եզական :

ich war, էի, իտիմ.
du warest, warst, էիր, իտին,
er, sie war, էր, իտի.

ich wäre, եթէ լինէի, իսէյտիմ.
du wärst կամ wärest, լինէիր, իսէյտին.
er, sie wäre, լինէր, իսէյտի.

### Յոգնական :

wir waren, էաք, իտիք.
ihr waret, էիք, իտինիզ.
sie waren, էին, իտիլէր.

wir wären, եթէ լինէաք, իսէյտիք.
ihr wäret, լինէիք, իսէյտինիզ.
sie wären, լինէին, իսէյտիլէր:

## Անցեալ կատարեալ :

### Եզական :

ich bin gewesen, եղէ, օլտում.
du bist gewesen, եղեր, օլտուն.
er, sie ist gewesen, եղեւ, օլտու.

ich sey gewesen, լեալ իցեմ, օլմուշ իսէմ.
du seyst gewesen, լեալ իցես, օլմուշ իսէն.
er sey gewesen, լեալ իցէ, օլմուշ իսէ կամ օլա.

### Յոգնական :

wir sind gewesen, եղաք, օլտուք.
ihr seyd gewesen, եղէք, օլտունուզ.
sie sind gewesen, եղեն, օլտուլար.

wir seyn gewesen, լեալ իցեմք, օլմուշ իսէք կամ օլայըք.
ihr seyd gewesen, լեալ իցէք, օլմուշ իսէնիզ կամ օլասըզ.
sie seyn gewesen, լեալ իցեն, օլմուշ իսէլէր կամ օլալար.

# Անցեալ գերակատար ։

## Եզական ։

ich war gewesen, եղեալ էի, օլ֊մուշտում.

du warst gewesen, եղեալ էիր, օլմուշտուն.

er, sie war gewesen, եղեալ էր, օլմուշտու.

ich wäre gewesen, եթէ եղեալ էի, օլմուշ իսէյտիմ կիմ օլայտըմ.

du wärst gewesen, եղեալ էիր, օլմուշ իսէյտին կիմ օլայտըն.

er, sie wäre gewesen, եղեալ էր, օլմուշ իսէյտի կիմ օլայտը.

## Յոգնական ։

wir waren gewesen, եղեալ էաք, օլմուշտուք.

ihr waret gewesen, եղեալ էիք, օլմուշտունուզ.

sie waren gewesen, եղեալ էին. օլմուշտուլար.

wir wären gewesen, եթէ եղեալ էաք, օլմուշ իսէյտիք կամ օլ֊այտըք.

ihr wäret gewesen, եղեալ էիք. օլմուշ իսէյտինիզ կիմ օլայտընըզ.

sie wären gewesen, եղեալ էին, օլմուշ իսէյտիլէր կիմ օլայտըլար ։

# Ապառնի պարզ ։

## Եզական.

ich werde seyn, եղէց, օլաճաղըմ.

du wirst seyn, եղիցիս, օլաճագ֊սըն.

er, sie wird seyn, եղիցի, օլաճագ ։

ich werde seyn, լինիցիմ, օլաճագ իսէմ կիմ օլամ.

du werdest seyn, լինիցիս, օլ֊աճագ իսէն կիմ օլասըն.

er werde seyn, լինիցի, օլաճագ իսէ կիմ օլա.

## Յոգնական.

wir werden seyn, եղիցուք, օլ֊աճաղըզ.

ihr werdet seyn, եղիջիք, օլ֊աճագսընըզ.

sie werden seyn, եղիցին, օլ֊աճագլար.

wir werden seyn, լինիցիմք, օլ֊աճագ իսէք կիմ օլալըմ.

ihr werdet seyn, լինիցիք, օլ֊աճագ իսէնիզ կիմ օլասընըզ.

sie werden seyn, լինիցին, օլ֊աճագ իսէլէր կիմ օլալար ։

## Ապառնի բաղադրեալ.

### Եզական.

ich werde gewesen seyn, լեալ եղէց, օլմուշ օլաճաղըմ.

ich werde gewesen seyn, եթէ լեալ եղէց, օլմուշ օլաճաք իսէմ կի օլամ.

du wirst gewesen seyn, լեալ եղիցիս, օլմուշ օլաճաքսըն :

du werdest gewesen seyn, լեալ եղիցիս, օլմուշ օլաճաք իսէն կի օլասըն.

er, sie wird gewesen seyn, լեալ եղիցի, օլմուշ օլաճաք.

er, sie werde gewesen seyn, լեալ եղիցի, օլմուշ օլաճաք իսէ կի օլա.

### Յոգնական.

wir werden gewesen sein, լեալ եղիցուք, օլմուշ օլաճաղըզ.

wir werden gewesen seyn, եթէ լեալ եղիցուք, օլմուշ օլաճաք իսէք կամ օլաք.

ihr werdet gewesen seyn, լեալ եղիջիք, օլմուշ օլաճաքսընըզ.

ihr werdet gewesen seyn, եթէ լեալ եղիջիք, օլմուշ օլաճաք իսէնիզ կի օլասընըզ.

sie werden gewesen seyn, լեալ եղիցին, օլմուշ օլաճաքլար :

sie werden gewesen seyn, եթէ լեալ եղիցին, օլմուշ օլաճաք իսէլէր կի օլալար.

## Հրամայական.

### Եզական.

sey (sey du) լեր, օլ կի սէն օլ.
sey er, sie, լիցի, օլսուն.

### Յոգնական.

seyd, լերուք, օլունուզ.
seyn sie, լիցին, օլսունլար.

## Աներևոյթ.

Ներկայ. seyn, էլ, լինել, օլմաք.
Անցեալ. gewesen seyn, լեալ գոլ, օլմուշ օլմաք.
Ապառնի. seyn werden, լինելոց գոլ, օլաճաք օլմաք.

## Ընդունելութիւն.

Ներկայ. seynd, wesend, գոյող, օլան.
Անցեալ. gewesen, լեալ, օլմուշ, իմիշ.

## ԽՈՆԱՐՀՈՒՄՆ ՕԺԱՆԴԱԿ ԲԱՅԻՍ HABEN. ՈՒՆԵԼ, ՍՏԱՆԱԼ.

| ՍԱՀՄԱՆԱԿԱՆ | ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ |
| --- | --- |

### Ներկայ.

#### Եզական.

| | |
| --- | --- |
| ich habe, ունիմ, պէնիմ վար. | ich habe, ունիցիմ, պէնիմ օլա. |
| du hast, ունիս, սէնին վար. | du habest, ունիցիս, սէնին օլա. |
| er, sie, es hat, ունի, օնուն վար. | er, sie habe, ունիցի, օնուն օլա. |

#### Յոգնական.

| | |
| --- | --- |
| wir haben, ունիմք, պիզիմ վար. | wir haben, ունիցիմք, պիզիմ օլա. |
| ihr habet, habt, ունիք, սիզին վար. | ihr habet, ունիցիք, սիզին օլա. |
| sie haben, ունին, օնլարըն վար. | sie haben, ունիցին, օնլարըն օլա. |

### Անցեալ անկատար.

#### Եզական.

| | |
| --- | --- |
| ich hatte, ունէի, պէնիմ վարըտը. | ich hätte, եթէ ունէի, պէնիմ օլայըտը. |
| du hattest, ունէիր, սէնին վարըտը. | du hättest, ունէիր, սէնին օլայըտը. |
| er, sie hatte, ունէր, օնուն վարըտը. | er, sie hätte, ունէր, օնուն օլայըտը. |

#### Յոգնական.

| | |
| --- | --- |
| wir hatten, ունէաք, պիզիմ վարըտը. | wir hätten, ունէաք, պիզիմ օլայըտը. |
| ihr hattet, ունէիք, սիզին վարըտը. | ihr hättet, ունէիք, սիզին օլայըտը. |
| sie hatten, ունէին, օնլարըն վարըտը. | sie hätten, ունէին, օնլարըն օլայըտը. |

